ISSN 0134—5257



# ՊԻՈՆԵՐ

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ

12. 1981

# Ձյու՜ն, էլի ձյու՜ն, էլի ձյու՜ն...

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Ձյու՜ն, էլի ձյու՜ն, էլի ձյու՜ն,
Փետուրների պաղ տարափ,
Համատարած լռություն,
Համատարած ճերմակ ամպ:

Խոսիր միայն շշուկո՛վ,
Որ հասկանան քո լեզուն,
Որ դայլայլի սիրտը քո
Այս անուշիկ երազում:

Ձյու՜ն, էլի ձյու՜ն, էլի ձյու՜ն,
Եվ արթնացած հեքիաթներ,
Համատարած մեղմությու՜ն,
Լույսերի տոն շուրջը մեր:



Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

# Ծորե գնդակը

*ԱՆԱՀԻՏ ԹԱՐՅԱՆ*

Տատն հագցրեց հաստ մուշտակը
Ու գլխարկը երկարականջ,
Ձեռնոցներից ընտրեց տաքը
Եվ գուլպաները իր գործած...

Ու թոռնիկին իր սիրասուն
Հագած-կապած այդպես տաք-տաք,
Կաղամբի պես շերտ-շերտ հասուն,
Ուղարկեց թե՝ դե գնա բակ:

Տանից ելավ տղան հագիվ,
Բակը լիքն էր մանուկներով...
Իսկ մի ծիտիկ կանչեց.— Ծի՜վ-ծի՜վ...
Ծորե գնդակն այս ո՞վ է, ո՞վ...

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
բանասիրության դոկտոր

## 44. Ե՞Ս, ԹԵ՞ ՄԵՆՔ, ԴՈ՞Ւ, ԹԵ՞ ԴՈՒՔ, ԿԱՄ ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ՈՃԱԿԱՆ ԻՆՉ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՆ ԹԱՔՑՆՈՒՄ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐԸ

Դասագրքից արդեն գիտեք ինչ է դերանունը. ինչպես բառն ինքը ցույց է տալիս՝ դա անվան դեր է կատարում գոյականի, ածականի, թվականի դեր: Այս զրույցում մեզ զբաղեցնողն այն հարցն է, թե այդքան համեստ, ինքնուրույն արժեք չունեցող, ուրիշի դեր կատարող դերանունները որքան մեծ ոճական հնարավորություններ են թաքցնում, երբեմն էլ անսպասելի, տարօրինակ հնարավորություններ:

Մեզնից ամեն մեկը մի «ես» է, և շատ բնական է, որ ասենք՝ «Ես եմ ասում», «Ես ներս մտա», «Ես ջուր եմ ուզում»: Եթե որևէ մեկն այս խոսքերն ասելիս ես-ը փոխարինի մենք-ով, կդառնա հեգնանքի արժանի՝ ի՜նչ անհամեստություն. այդպես էլ լինում է, երբ ասում են ամբարտավան՝ «Մի սիգարետ տաս ծխենք»: Երբեմն էլ հակառակն է լինում՝ անհամեստ համարվում է ոչ թե մենք, այլ ես ասողը: Օրինակ՝ զեկուցողը եթե շեշտում է շարունակ «ես ուսումնասիրեցի», «իմ համոզմամբ», «ես եզրակացրի», «ես պնդում եմ»... Ահա ինչու ընդունված է սեփական անձի առանձնաշեշտումից խուսափելու համար, ես-ի փոխարեն մենք ասել՝ «մեր համոզմամբ», «մեր կարծիքով» և այլն:

Ես-ի առանձնաշեշտումն առհասարակ մատնում է ինքնահավան, հավակնոտ հոգեբանություն, զուր չէ, որ էգոիստ, էգոցենտրիկ օտարամուտ բառերը հայերեն թարգմանվում են եսասեր, եսամոլ, եսակենտրոն բառերով:

Դառնանք դու և դուք անձնական դերանուններին: Եթե մի հոգու ենք դիմում՝ դու պիտի ասենք: Բայց ինչո՞ւ մեր ուսուցչին, մի որևէ հարգարժան մարդու, մեզնից ավագ կամ անծանոթ մեկին դիմելիս «խախտում» ենք կանոնը, դուք ենք ասում: Իսկույն կասենք՝ մեր հարգանքն արտահայտելու համար: Սա նույնպես ոճական հնար է, թեև իր ծագման ժամանակ այդպիսին չի եղել: Ըստ ավանդության, հին Հռոմում, եռապետության (տրիումվիրատ) իշխանության ժամանակ, երեք տիրակալներից ամեն մեկը խոսելիս պետք է մենք ասեր, քանի որ խոսում էր երեքի անունից, իսկ նրանց դիմողները՝ դուք, քանի որ դիմում էին այդ երեքին: Հետագայում դիմելու այդ հոգնակի ձևը տարածվեց իբրև կիրթ, հարգալից խոսելու ձև:

Բայց մի՞շտ է, որ դուք-ը կարող է դիտվել իբրև հարգանքի նշան: Ո՛չ: Պատահում է և այնպես, որ վաղուց ի վեր մտերիմ մարդուց վիրավորված լինելով՝ նրան դուք-ով ենք դիմում, կամենալով ասել, թե մենք առաջվա մտերիմները չենք, մեր հարաբերությունները դրվում են պաշտոնական հողի վրա: Ի դեպ, անգլերեն լեզուն դուք-ի եզակին չունի և անգլիացին շանը նախատելիս էլ դուք պիտի ասի: Դա մեզ թվում է անսովոր ու զվարճալի, անգլիացուն՝ բնավ:

Քեզ-ն անձնական դերանուն է, եզակի թվով, տրական հոլովով: Բայց երբ ասում ենք՝ «ա՛յ քեզ փորձանք», «ա՛յ քեզ բան», մենք «մոռանում» ենք դրա քերականական պաշտոնը և քեզ-ը դառնում է ոճական լավ հնար մեր զարմանքն արտահայտելու համար: Մեկ էլ տեսար, քերականորեն ճիշտ ձևը «մոռացած», ինձ-ի փոխարեն քեզ ենք ասում՝ «քեզ ո՞վ էր ասում վեր կենաս գնաս», «քեզ ո՞վ էր ստիպում ծանր տեղդ թեթևանաս», «քեզ ի՞նչն էր խանգարում»: Հիշենք «Անուշ» պոեմի հերոսին ինքն իրեն նախատելիս. «Ամո՛թ քեզ, Մոսի, թուք ու նախատինք, ամո՛թ քեզ նման գոված իգիթին...»

Քերականական «խախտումներ», որոնք ծնում են ոճական տպավորիչ հնարներ, խոսքին տալիս են գույն, երանգ, հուզական ուժ:

Այն էլ կարող է պատահել, որ մարդ իր մասին խոսի ոչ թե երկրորդ, այլ երրորդ դեմքով. Արամը կարող է ասել՝ «Արամն իր խոսքի տեր մարդ է», «Արամն էն մարդը չի, որ ամեն խոսքի հավատա», «նա այդ խոսքը կուլ տվողը չի». ևս մի ոճական հնար, որ հաստատական ուժ է տալիս խոսքին:

Անձնական դերանունները ոճական ուրիշ հետաքրքիր կիրառումներ էլ ունեն՝ «ի՛նչ ես քեզ ու քեզ խոսում», «բոլորը գնացին, մնացինք մենք ու մենք», «մի մարդ իրեն-իրեն խոսում էր», «ինձ ու ինձ միտք եմ անում»: Թվում է, խոսքի այս երանգներն ստանալու համար անհնար է ոճական ուրիշ հնարներ գտնել: Կամ, ահա, ի պատասխան դու հարցումի՝ «այո՛ ես ինքս», այդպես էլ՝ «դու ի՛նքդ», «նա ի՛նքը», «մենք ինքնե՛րս» և այլն:

Հիմա տեսնենք, թե ինձ հարցական դերանունը, բացի իր անմիջական պարտականությունից, ուրիշ ինչ ծառայություններ կարող է մատուցել՝ խոսքին ոճական երանգներ տալու առումով: «Խնդրում եմ, դու էլ գաս», «Լավ կլինի, դու էլ գաս», «Ինչ կլինի, դու էլ գաս»,— նու՞յնն են արդյոք իրենց իմաստով: Գրեթե: Երեքն էլ հայտնում են նույն ցանկությունը, որ ինչ-որ մեկը գա ինչ-որ տեղ: Բայց առաջինում դա հայտնվում է պաշտոնապես, երկրորդում՝ ըղձանքով, երրորդում՝ մտերմիկ խնդրանքով: Հիշու՞մ եք Թումանյանի տողերը. «Ի՞նչ կլինի, ասա, գրիչ, ինձ էլ սիրես գոնե մի քիչ»: Ինչով ուզում եք փոխարինեցեք առաջին երկու բառը՝ հուզական նույն երանգը, նույն տրամադրությունը չեք ստանա, Թումանյանի խոսքով ասած՝ էն չի լինի:

Կարող ենք ասել «Հարկավոր չէ» և «Ի՞նչ կարիք կա», «Դա ինձ չի վերաբերում» և «Ի՞նձ ինչ», «Դա ինձ չի զարմացնում» և «Ի՞նչ կա որ»,— զուգահեռ ձևեր, որ նույն իմաստն են

հաղորդում, բայց գրեթե նույնը, և այդ գրեթե-ն է կարևորը։ Այդ մի հատիկ ինչ-ը ճիշտ տեղն ընկնելիս ոճական և հուզական լավ հնարավորություններ է հայտնաբերում. զարմանք ես հայտնում՝ «Ա՛յ թե ինչ», քամահրանք՝ «Դա ի՜նչ է որ», հիացմունք՝ «Ի՜նչ գեղեցկություն», կշտամբանք՝ «Ի՞նչ ես քիթդ կախել» և այլն։

Քերականության դասագիրքը մեզ սովորեցնում է, որ այս, այդ, այն դերանունները պատկանում են առարկայի հատկանիշ ցույց տվող, այսինքն՝ ածական դերանունների, իսկ սա, դա, նա դերանունները՝ առարկա ցույց տվող, այսինքն՝ գոյական դերանունների շարքին։ Եթե այդպես է, ապա հասկանալի է, թե ինչու գոյական դերանունը հեշտ ու հանգիստ կատարում է ենթակայի դեր. «դա բանի պետք չէ, իսկ սա բոլորից լավն է»։ Հաճախ և, կարծում եմ, իզուր, ենթակայի դեր է տրվում ածական դերանուններին ևս։ Իզուր՝ ահա թե ինչու. երբ ասում ենք. «Այդ բանի պետք չէ, իսկ այս բոլորից լավն է»՝ կարիք ենք զգում, որ այս-ից և այդ-ից հետո նշվի, թե ինչն է անպետքը կամ բոլորից լավը՝ այս գրիչը, այդ գրիչը, մինչդեռ սա-ի և դա-ի դեպքում դրա կարիքը չի զգացվում։

Եվ արդեն շատ վատ է, ոճական առումով՝ տգեղ, երբ այն դերանունն է ենթակայի պաշտոն առնում։ Ահա խնդրեմ. «Սևանա լիճը մեր լեռնաշխարհի զարդն է։ Այն գտնվում է ծովի մակերևույթից 2000 մետր բարձրության վրա։ Այն շրջապատված է...»

Չգիտես ինչու կարծես կանոն է դարձել, որ նա-ն հատկացվի ոչ թե առարկայի, այլ անձնավորության, բայց ահա տեսեք Հովհ. Շիրազի հայտնի բանաստեղծության մեջ հատկացվում է առարկայի և այդ գեղեցիկ տողերի մեջ ոչինչ չկա անբնական.

Հին աշխարհը չեմ տեսել
Ու ոչ մի բան չեմ հիշում
Ու չեմ նրան երազել
Իմ հուշերի մշուշում։
Բայց երբ նայում եմ խաղաղ
Մորս դեմքի դալուկին,
Ինձ թվում է, թե մի պաղ
Վիշտ է եղել կյանքը հին։
Հին աշխարհը չեմ տեսել
Ու ոչ մի բան չեմ հիշում,
Բայց թողել է նա մի թել
Մորս աչքի մշուշում։

Ինչպես տեսնում եք՝ նա դերանունը շատ հանգիստ կարող է փոխարինել նաև առարկայի, և զուր ենք դրանից խուսափում։ Այդ խուսափելն է պատճառ դառնում, որ այն-ը գործածվի ավելի հաճախ և, տեղի-անտեղի մեջտեղ ընկնելով, փչացնի մեր խոսքի ոճը։ Որքան տարածված է և որքան տգեղ այն դերանվան ահա այսպիսի գործածումները՝ «Վերցրեց քարը և դեն նետեց այն», «Ձեռքն առավ թերթը և կարդաց այն»։ «Գրեց նամակը և ուղարկեց այն»։ Պետք է խուսափել այն-երի ավելորդ կիրառումներից, իմանալով նաև, որ այդ դերանունը զուրկ է ճկունությունից, թեքումների չի ենթարկվում, չի հոլովվում (ի դեպ, արևմտահայերենում հոլովվում է՝ ան-անոր)։

Ի վերջո, մեր զրույցն ավարտենք մի խորհրդով՝ հայոց լեզուն անձնական դերանունների այնքան էլ սիրահար չէ. հայերենի օժանդակ բայերն այնքան ուժեղ են, այնքան որոշակի (գրում եմ, գրում ես, գրում է՝ գործողություն կատարողը պարզ երևում է), որ դերանունների հաճախադեպ գործածությունը դարձնում են անհարկավոր՝ դրանց թողնելով ոճը տգեղացնողի, ծանրաբեռնողի տխուր դերը։

# ՄԵՐ ՍԵՐԻՆՈՍԸ



ՌԵՎԱԶ ԻՆԱՆԻՇՎԻԼԻ



եկտեմբերյան փոքր-ինչ խստաշունչ օր էր, քամի: Քամին նախ թուխ ամպեր բերեց, ապա սառն անձրև, հետո՝ ձյուն: Փաթիլները երբեմն այնքան խիտ ու առատ էին թափվում, որ շուրջբոլորը մթնում էր, իսկ շենքերը հազիվ էին նշմարվում: Գետնին հասնելուն պես փաթիլները անմիջապես հալվում էին, որից ասֆալտապատ փողոցները նույնպես սևանում էին, մթնում: Միայն այգիներն ու պուրակները շրջափակող ձողապատերն էին սպիտակին տալիս: Անցնող-դարձողները դեմքերը թաղել էին վերարկուների բարձրացված օձիքների մեջ և փոքր-ինչ կորացած շտապում էին տուն: Ոմանք նույնիսկ վազում էին: Մեկ էլ տեսա՝ մի փոքրիկ աղջիկ անշարժ կանգնած է փողոցի ծայրին՝ պուրակի մոտ: Աջ ձեռքին բռնել էր կարմիր պայուսակ, մեջը՝ երկու կտոր հաց: Աղջնակն անքթիթ նայում էր պուրակին: Տեսնես ի՞նչ կա հետաքրքիր,— մտածեցի ես ու քայլերս դանդաղեցրի: Մի քանի մետր էլ առաջ գնացի, պպզեցի, ձեռքերս հենեցի ծնկներիս ու ես էլ նայեցի: Մի գեղեցիկ, գույնզգույն սերինոս նստել է թաց գետնի վրա՝ արծաթագույն եղևնու տակ, և հացի փշրանք է կտցահարում: Տեսնելով, ես էլ եմ սերինոսին նայում, աղջնակն ասաց.

— Միոտանի է:

— Ինչպե՞ս թե՝ միոտանի է:

— Ոտքերից մեկը չունի:

— Չէ՛, փոքրի՛կս,— ժպտալով ասացի ես,— սերինոսը մրսում է, ոտքերն էլ սառչում են, դրա համար մեկ մի ոտքի վրա է կանգնում, մեկ՝ մյուս:

— Այս սերինոսը միոտանի է,—տըխուր կրկնեց աղջնակը:

Քամին շատ փաթիլներ հավաքեց: Սերինոսը երերաց, բայց կարողացավ թևերով ծածկել հացի կտորը: Երբ քամին մեղմացավ, սերինոսը վեր կացավ, ուղղվեց և նորից մի ոտքի վրա կանգնելով, սկսեց կտցահարել հացը: Ես սաստիկ ամաչեցի աղջնակից:

— Ների՛ր ինձ, փոքրի՛կս: Խե՜ղճ սերինոս:

— Ինչու՞,— հարցրեց աղջնակը և զարմացած ճպճպացրեց թարթիչները:

— Նրա համար, որ դու ճիշտ էիր ասում, իսկ ես չհավատացի քեզ:

Նա հազիվ նկատելի ժպտաց ու ավելի ուշադիր նայեց թռչունին:

Թեև աղջկա ուսերն ու աջ հոնքի վրա թեքած ծիծեռնակագույն բերետն ամբողջովին սպիտակել էին, բայց տեղից չէր շարժվում: Ես էլ մնացի: Քամին սերինոսին նորից պոկեց տեղից: Սերինոսը կրկին թևերով ծածկեց հացը: Ես ու աղջնակը միաժամանակ իրար նայեցինք:

— Ի՞նչ անենք,— հարցրի ես:— Եթե կարողանանք բռնել, կարելի է

լուցկու հատիկից պրոտեզ պատրաստել:

Աղջիկն իր տխուր հայացքն ինձ հառեց:

— Ոտքը շատ բարձրից է կտրված:

— Ա-ա՜հ:

Սերինոսն ուտելը թողեց, փոքրիկ կտուցը քսմսեց խպիպին, առժամանակ մտախոհ նստեց, հետո նայեց մեզ: Սկզբում ուղիղ էր նայում, մեկ էլ գլուխը թեքեց ու կանչեց՝ չի՜-րիկ...չի-րի՜կ: Հետո շրջվեց ու ցատկոտելով գնաց այգեգոտու տակով: Այնպես վարժ էր ցատկոտում, ասես, ուզում էր մեզ ցույց տալ, թե ինչեր կարող է անել ինքը: Մենք ժպտալով հետևում էինք նրան, բայց այդ պահին մի տղա ու մի ահաբեկված շուն դուրս նետվեցին նրբանցքից: Սերինոսը թռավ, բարձրացավ վեր, համարձակորեն հաղթահարեց քամու դիմադրությունը և, ի վերջո, խառնվեց ձյան փաթիլներին:



Նկ. ԱՐԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Ես ու աղջնակն այլևս ոչինչ չասացինք միմյանց. լուռ քայլում էինք թաց մայթով: Շատ չանցած, աղջնակը կանգ առավ հինգհարկանի շենքի առջև ու երկչոտ ասաց.

— Ցտեսություն:

— Դուք այստե՞ղ եք ապրում,— հարցրի ես:

— Այո՜, իսկ դու՞ք:

— Ե՞ս: Քիչ այն կողմ, 68-րդ շենքում: Անունդ ի՞նչ է:

— Մզիա:

— Ուրիշ ծանոթ թռչուններ է՞լ ունես, Մզիա՜:

Մզիան թոթվեց ուսերն ու ժպտաց:

— Ցտեսությու՜ն, հորեղբա՜յր:

— Ցտեսությու՜ն, Մզիա՜: Մի՜ վըշտանա, մեր սերինոսը շատ է ղոչաղ, ձյունն ու ձմեռը նրան ոչինչ չեն անի:

— Ես էլ եմ այդպես կարծում:

Մզիան ձեռքը վեր բարձրացրեց և թույլ, երկար մատները օդում խաղացնելով, բացականչեց.

— Մնաք բարո՜վ, հորեղբա՜յր:

— Ցտեսությու՜ն, Մզիա՜:

Աղջնակը մուտքից ներս մտավ: Փողոցում միայն ես էի: Ձյունում էր: Այնպե՞ս էի ուզում ձյան հետ բարի երաժշտություն տեղար...

*Վրացերենից թարգմ.*

ՀՐԱՉԻԿ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ

## ԱՄՊԻԿ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

— Ամպի՛կ, ամպի՛կ,
Ո՞ւր ես գնում,
Ա՛յ ոսկեթև ամպիկ,
Ինչու՞ այդպես
Լուռ ես գնում,
Թեթև՛-թեթև ամպիկ։
— Չկան ծաղկունք,
Չկան խոտեր,
Որ ինձանից ուզեն ջուր,
Ձմռան շունչն է
Դաշտը պատել,
Գնում եմ... չգիտեմ՝ ուր։

## ԵՐԳԸ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Լսեք ինչ եմ ես երգում...
Եվ իմ երգը ձկան պես
Թպրտում է իմ ձեռքում,
Հետո ձեռքից ընկնում վար,
Առվակի մեջ է լողում.
Եվ լույսերի մեջ պայծառ
Պսպղում է, շողշողում։
Ով որ կգա ուռկանով
Այդ լավ ձուկը որսալու,
Կհմայվի իմ երգով
Ու կքայլի երգելով,
Ու երգերը ձկան պես
Կտարածվեն գետերում,
Կթռչկոտեն եթերում,
Ու բոլորը կիմանան,
Որ թռչում են երկնքով
Գետեր, ծովեր և օվկիան։

## ՋՐՈՒՅՑԸ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

— Գարունը ե՞րբ կգա,
Որ չմրսեմ էլ ես։
— Երբ վերարկուն հանած
Գնաս մանկապարտեզ։

Եվ վերարկուն հանեց
Տիգրանն արագ-արագ,
Մնաց միայն հագած
Վերնաշապիկ բարակ։
— Դե, պատրաստ եմ, հայրի՛կ,
Գնանք մանկապարտեզ,
Գարունն հիմա կգա
Ու չեմ մրսի էլ ես։

# Ես հավարած եմ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

2

Կոլտնտեսության հաշվեմատյաններում իմ անվան դիմաց գրում են թռչնապահ: Եթե հեքիաթում եղել է սագարած աղջիկ, թող լինի նաև հավարած:

Չորս ընկեր ենք՝ Վարսենիկը, Սաթոն, Մնաց քեռին, ես: Նրանք վաթսունն անց մարդիկ են: Վարսենիկը պարծենում է, որ թռչնապահ է կոլտնտեսության հիմնադրման օրից:

— Քեզ ի՞նչ կա,— նրան արձագանքում է Սաթոն,— պատերազմի ժամանակ դու տանձենու շվաքում նստած նայում էիր, թե հավերը ոնց են քուջուջ անում, ես մանգաղը ձեռքիս դեմի հողերում արտ էի հնձում: Միտքս շատ էր շաղված, ցուցամատս կտրեցի: Տեղը դեռ մնում է, նայեցեք:

Մնացն էլ է պարծենալու բան գտնում.

— Էս անտեր աչքերիս պատճառով ինձ բանակ չտարան,— նա խոնարհում է մանր ու շեղ աչքերը, որոնց նայելիս հավատալը չի գալիս, թե նրանք աչքերը կարող են տեսնել,— գնացի սարերը՝ կոլխոզի ոչխարը պահելու: Մինչև իմ գնալը երեք հոգով էին պահում, մի գիշերում երեքին էլ բանակ տարան: Ես արդեն մենակ էի պահում:

— Կտրվես դու էլ, քո պահելն էլ,— Սաթոն չանչ արեց,— խաբարն եկավ, թե Մնացը մենակ է մնացել, գելերը համ ոչխարներին են կերել, համ՝ շներին: Հասեք, գոնե էս մարդուն փրկեցեք:

— Չէ՛, չէ՛,— Մնացը չի բարկանում, ժպտում է բարեհոգի՝ շողացնելով մանրիկ աչքերը,— մինչև հիմա չգիտեմ, թե էդ սուտը որ շան տղեն էր տարածել:

— Էդ տարի չէ՞ր, որ քեզ վրա երգ կապեցին՝ կոլխոզի չոբան, արևից ղուրբան,— միջամտում է Վարսենիկը:

Երեքով քահ-քահ ծիծաղում ենք:

Ով բերանը բացում է, նրան եմ նայում: Նաև սիրտս թպրտում է, մտածում եմ, որ ամեն բերան բացող Սոնայի նման հիմա կասի՝ ուրիշները հինգ-վեց տարում են ինստիտուտ ավարտում, դու երեք ամսո՞ւմ...

Աշխարհի ոչ մի անկյունից մեր ֆերման չի երևում, թեև գյուղից երեք-չորս կիլոմետր է հեռու: Հարթավայր է, հետո բլուրներ, նորից հարթավայր, նորից բլուրներ: Հարթավայրերում աշնանացան ցորեն է ցանված, իսկ բլուրները պատված են մերկացած ցաքիներով ու քարերով: Հարթավայրերի ու բլուրների արանքում մի ձոր կա, որտեղով փոքրիկ գետակն է հոսում: Գետակի ձախ ափին մոխրատանձենին է: Օրվա բոլոր ժամերին նրա ճյուղերին հավերն են ծղրտալով թառում, իսկ շոգ ժամանակ նրա թանձր շվաքը ստվերում է թռչնապահների խնջույքը: Գետակի աջ ափին մեր ֆերման է՝ երկար մի շենք, կղմինդրածածկ, ցածր առաստաղով, հողե հատակով: Տախտակի կտորտանքներից, վերից վար

Սկիզբը՝ № 11-ում:

թառեր են պատրաստել, պատերն ու հատակը կրով ախտահանել, անկյուններում խոտից ու ծղոտից բներ են դրել, որտեղ հավերը ձու են ածում: Թռչունները իրենց քեֆին ներսուդուրս են անում, առվի եզերքին քուչուչ տալիս, ջուր խմում, սրտների ուզածի չափ կչկչացնում, իրար կտցահարում: Հաճախ առվի եզերքով հեռանում են, գլուխները կախ, պատահած թփերն ու հողակոշտերը կտցահարում, քարերի արանքից մեռած խխունջների ու որդերի դիակներ հանում, նորից կտցահարում, կամ չորացած ցողուն, տերև ու արմատ որոնում: Ձորը լցված է աքլորների ամբարտավան ծղրտոցներով ու հավերի՝ ինքնագոհ կչկչոցներով՝ իբր տեսեք, ձու ենք ածել, իրավունք ունենք սիրտներիս կամեցածի չափով աղմկելու:

Հազվադեպ է պատահում, որ թռչունները հարթավայր դուրս գան, միշտ բլուրների կողմն են գնում, մոլորվում ցաքիների, մոշու և մամխի թփերի մեջ, հաճախ բույն դնում այնտեղ, ձու ածում և միայն երեկոյան, թռչնապահների բազմաթիվ ու բազմաձայն կանչերից հետո, թռչնանոց վերադառնում: Մեր ֆերման կտրված է բոլոր տեսակի մեծ ու փոքր ճանապարհներից: Շաբաթական մի անգամ ֆերմայի վարիչ Աղասին է «Բելոռուսով» կեր բերում, հավաքած ձվերը զույգ-զույգ հաշվում, լցնում ուտելու դալար շիվերից պատրաստած քթոցների մեջ ու տանում, հանձնում կոլտնտեսության պահեստ:

Թռչնանոցից վերև մեծ ժայռեր կան: Դրանց արծվաքարեր, արծվանիստ են ասում, երբեմն էլ՝ արծվաթառ: Արծիվներն այնտեղ են նստում կամ թառում, այնտեղից հարձակվում մեր խեղճ հավերի վրա, մագիլների մեջ փետրահան անելով օդ բարձրանում, տանում, հեռացնում մեր աչքից: Ժայռերի հետևում նորից հարթավայր է՝ երիզված քարքարոտ բլուրներով: Արծիվներն իրենց զոհերին այնտեղ են հոշոտում:

Մնաց քեռին ինձ բացատրեց, որ իմ գործը արծիվներին հետապնդելն է: Պետք է գտնեի թռչունների հոշոտված մարմնի կտորտանքը, հավաքեի, բերեի ֆերմա, որպեսզի ինքը տաներ անասնաբուժարան՝ համապատասխան ակտ կազմելու համար:

— Թե չէ,— մանրիկ աչքերը բազմիմաստ թարթելով ու փոքրիկ գլուխը օրորելով ասում էր,— տարվա վերջին մեր աշխօրերի հաշվին դուրս կգան, մեղք ենք:

— Ո՞նց իմանամ ուր են տանում:

— Արծիվները հավերի հետ երկար չեն թռչի, հոգնում են: Նրանց գնացած տեղը քարերն ու ժայռերն են: Միշտ էնտեղ են իջնում: Բայց քեզ մի շուն է հարկավոր, հորդ շներից մեկին բեր: Հենց վաղը կբերես: Հանդի մարդը առանց շան չի կարող յոլա գնալ: Ես քեզ օրինակ:

Լավ է իր օրինակով չասաց, որ հանդի մարդը առանց ավանակի ու ոչխարների, առանց այծերի ու գառների չի կարող յոլա գնալ, որովհետև ինքը սեփական ոչխարները, գառներն ու այծերը այդտեղ էր պահում: Թռչնանոցից մի քիչ հեռու մի քարայր էր գըտել, ցերեկները արածում էին ցաքուտներում, գիշերները քշում էր քարայր: Վարսենիկն ու Սաթոն էլ իրենց էշն ու ոչխարներն ունեին, բայց նրանք ամեն օր իրենց հետ գյուղ էին տանում բերում:

— Քո գործը արծիվներին հետապնդելով չի վերջանում: Պետք է նաև կանանց օգնես գտնելու քարատակերի ու ցաքուտների բները, այնտեղի ձվերը հավաքես: Մեծ կանայք են, դժվար են քայլում, առանց այդ էլ գործ շատ

ունենք: Մինչև թռչնանոցի ներսն ու դուրսը մաքրում են, կերակրում, ձուն հավաքում, նորից կերակրում, հոգնում ենք: Դրա համար Աղասուն խնդրեցինք, որ քեզ պես մի ջահել գտնի:

Մնացը ծանոթացրեց նաև իր պարտականություններին:

— Ամենից դժվարը իմն է,— ասաց,— գիշերները անտեր-անտիրական չոլում մնալը հեշտ չի: Հազար տեսակ գազաններ ու հարամիներ կան: Հինգ հազար հավի մենակ եմ հսկում: Հլա սաս հի՞նգ հազար...

Վերջին բառը այնպես ծոր տվեց, որ հինգը տասնհինգ դարձավ:

Ես նայում էի ժայռերին ու աչքերս սևանում էին: Արծիվը վերևում, ես՝ ներքևում: Հազար շուն ունենայի, ի՞նչ կարող էի անել: Ո՛չ շունը թև ունի, ո՛չ՝ ես: Մտածում էի հաջորդ օրը ֆերմա չգալ: Բայց լույսը բացվելուն պես, գլուխս կախ բռնում էի թռչնանոցի ճամփան:

Այո, լավ էր հավարած դառնալ, օրեր մթնեցնել այս մենաստանում, քան երևալ մարդկանց, որոնց հուսախաբ էի արել:

***

Դեկտեմբեր ամիսն էր: Գյուղի մարդիկ հանդերում ու դաշտերում անելիք չունեին: Դրանից ես գոհ էի: Մթին գնում, մթին գալիս էի: Վարսենիկի ճանապարհը մեր տան հետևով էր անցնում: Պայմանավորված ժամին կանգնած սպասում էի նրան: Նեղ փողոցից դուրս էր գալիս՝ էշն առաջն արած, զույգ ոչխարների հետ: Նիհար, բարձրահասակ, մի քիչ կորացած մեջքով, սև գլխաշորով, տխուր աչքերով:

— Քո քնելու լավ ժամանակն է, բալա,— բարի լույսի հետ ասում էր ինձ,— առավոտվա քունը ուրիշ է: Արդեն քառասուն տարի է, ես զրկված եմ այդ քնից,— մթության մեջ աչքերը չէի տեսնում, բայց ինձ թվում էր խոնավ թարթիչներից տխրություն է ծորում, խառնվում մութին ու խորհրդավոր կածաններով գնում, ձուլվում նրա թախծոտ հուշերին: Երբեք չէի հարցնում, թե ինչու քառասուն տարվա լուսաբացների անքուն է մնացել: Գիտեի, որ պատերազմից չեն վերադարձել նրա ամուսինը, որդին, երեք եղբայրները, իսկ երկու աղջիկները վաղուց ամուսնացել, բայց երբեք մենակ չեն թողնում իրենց վշտահար մորը: Ապրում է իր փոքրիկ տանը՝ թոռներով շրջապատված: Սաթոն հաճախ է խեթում.

— Տուն դու լիքը, դուռդ լիքը: Փեսաներդ ու աղջիկներդ գլխովդ պտտվում են, սրբի տեղ հարգում, էլ խի՞ ես աշխատում:

— Չէ,— պատասխանում էր,— մեծ աղջկաս երեխաները շատ են, ուզում եմ օգնել: Արդեն հասած տղա ու աղջիկ ունի, մի բանի էլ ես պետք գամ:

Ինձ ընկերակցում էր մեր Դեղնուկ շունը: Մնացի խորհրդով նրան հետս էի վերցնում: Դեղնուկը տան շուն էր՝ ոչ մեծ, ոչ փոքր, սուր, ցից-ցից ականջներով, դեղնասպիտակ գույնի: Ոչ մեկի վրա չէր հաչում, բայց երբ կամենում էր, ինքն իր համար հաչում էր մի երկու բերան, հետո պառկում ստվերում կամ խաղում երեխաների հետ: Հենց առաջին օրից սիրով ու անտրրտունջ հետևեց ինձ: Եվ հիմա, ամեն առավոտ, առանց նախազգուշացնելու, երբ դուրս եմ գալիս, կողքիս կանգնած է:

Սաթոն մեզ սպասում էր գյուղից դուրս, մեծ աղբյուրի մոտ: Դա մեր հանդիպման վայրն էր: Միշտ նույն ժամին այդտեղ էինք:

Սաթոյի էշը երկուսն էր: Քուռակն արդեն էշ էր դարձել, ոչխարներն էլ երեքն էին:

— Ինչո՞ւ ձեր ոչխարները Մնաց քեռու հոտին չես խառնում, ամեն օր տանում բերում ես,— մի առավոտ հարցրի:

— Հանկարծ բան-ման պատահի, հետո ումի՞ց պահանջենք,— պատասխանեց Սաթոն:

Գյուղից հենց դուրս էինք գալիս, կանայք իմ օգնությամբ նստում էին ավանակներին: Աշխատանքից վերադառնալիս նորից էին բազմում ավանակներին: Օրեր անց հասկացա, որ ավանակները ուրիշ ծառայություն էլ են կատարում. երեկոները փոքրիկ խուրջինների մեջ հավերի կերից բերում էին իրենց հենվորների սեփական հավերի համար:

Ես ո՛չ ավանակ ունեի, ո՛չ սեփական հավ, ո՛չ ոչխարներ: Ես էի ու իմ Դեղնուկ շունը:

— Բալա ջան, բեզարած ես,— մի օր թռչնանոցից վերադառնալիս ասաց Սաթոն,— քուռակի մեջքը չի կոտրվի, չնայած փալան չունի, բայց նստի՛ր:

Վաղուց այդ մտքին էի նաև ես, բայց ամաչում էի: Հանկարծ տեսնող կլինի, մի բան էլ դա կասրքեն: Սակայն էշ հեծնելու գայթակղությունը դեռ մանկությունից էր մեջս նստած և առանց նազուտուզի, առանց Սաթոյի խոսքը երկրորդելու, մի թափով թռա քուռակի մեջքին, որ այլևս քուռակ չէր և քաջաբար դիմացավ իմ ծանրությանը:

Այդ օրից երեքս էլ էշով էինք գնում գալիս: Նայում էի մեր փոքրիկ խմբին և համեմատում ասպետական ժամանակների հերոսական կանանց: Այնքան էի տարվում մտքերով, որ թվում էր, թե մթության մեջ ինչ-որ դավադիր աչքեր մեզ են հետևում, սպասում հարմար պահի, որ հարձակվեն: Հետո պատկերացնում էի, որ ջարդ կտանք, կքշենք նրանց, կփրկենք մեր հարըստությունը՝ հինգ ոչխար, երեք ավանակ և մի շուն: Հետո նորից էի մեզ նայում ու մտքիս մեջ ծիծաղում:

Կանայք փոխանակում էին իրենց տներում լսած նորությունները: Եվ լսում էի, և չէի լսում նրանց: Դեռ չէի համարձակվում խառնվել խոսակցություններին, նույնիսկ այն ժամանակ, երբ խոսքը վերաբերում էր մեր աշխատանքին:

— Խի՞ չես խոսում, ա՛յ բալա,— Սաթոն դիմեց ինձ:

— Եսիմ,— ուսերս թոթվեցի:

— Խեղճ երեխան ի՞նչ անի,— Վարսենիկը իր տխուր աչքերը հառեց ինձ,— սրա տարիքի երեխաները դեռ քնած են:

— Մեղավորն ինքն է:

Ականջներս դժժացին, սիրտս թըպըրտաց նորից, մթությունն ավելի խտացավ ու լցվեց աչքերիս մեջ: Այստեղ էլ հանգստություն չունեմ: Կախեցեք ինձ պատահած ծառից, թռչնանոցի առաստաղից, արծվանիստից, որ ջհանդամից ուզում եք: Փոքր չեմ, արդեն տասնյոթ տարեկան եմ: Կյանքում մի ինքնուրույն քայլ արեցի, այն էլ սխալ: Ծաղունակեի՞ սխալս...

Խոռվքս չանցավ նույնիսկ այն ժամանակ, երբ հասանք թռչնանոց, ավանակներից իջանք:

— Ինչո՞ւ եք ուշանում,— Մնացը մեղմ հանդիմանեց,— բա չե՞ք ասում՝ ես էլ մարդ եմ, հինգ հազար հավի հետ ո՞նց եմ մենակ գլուխ հանում:

Մնացը հենց այնպես էր հանդիմանում, որովհետև նա ընդամենը դռները էր բացել, հավերին նույնիսկ դեռ կեր չէր տվել:

Դեղնուկի հետ քաշվեցի դեպի ժայռերը:

Երանի ուրուրները հավերին թողած, ինձ տանեն, ոնց որ հեքիաթներում, երբ խորթ մորից հալածված որբ

աղջիկներին իրենց թևերին են առնում, տանում հասցնում իրենց մուրազին: Ես որբ չեմ, բայց բոլորի համար խորթ եմ, բոլորը հալածում են ինձ: Սաթոյին ասես՝ մեծ կնիկ ես, քո ի՞նչ գործն է, թե ինչու եմ Երևանի լուսավոր փողոցները թողել, եկել այս հանդերն ընկել: Վարսենիկը կարգին կնիկ է, Մնաց քեռին՝ հասկացող մարդ, ոչ մի անգամ չեն հիշեցնում:

— Արո՛ս...

Ետ եմ նայում: Վարսենիկը ձեռքը ճակատին կանչում է:

— Արի՛ արի՛, արի՛...

Ես ու Դեղնուկը ետ ենք դառնում: Երևի նախաճաշի է կանչում: Սիրտ չունեմ, ո՛չ ուտելու, ո՛չ խոսելու:

— Արո՛ս ջան,— Սաթոն ցախավելը ձեռքին ինձ է մոտենում,— էսօր դռները դու ես մաքրելու: Կամաց-կամաց պետք է սովորես: Աշխատանքն այնպիսի բան է, որ պետք է հավասար բաժանենք: Երկու շաբաթ է գալիս ես, բայց մտքովդ չի անցնում, մի անգամ գոնե ցախավելը վերցնես, ներսն ու դուրսը ավլես, կրաջուր պատրաստես, պատերն ու հատակը սպիտակես, էլ չեմ ասում կեր տաս: Ո՞նց կլինի, բալա՛:

— Մնաց քեռին ինչ ասել է, այն եմ անում:

— Մնաց քեռին ինքը գործ չի անում, ուզում է քեզ էլ անբանության սովորեցնել: Ջահել աղջիկ ես, պետք է ամբողջ օրը թռվռալով գործ անես, չթողնես, որ մենք տեղից վեր կենանք:

Ես ամոթ զգացի և՛ իմ սամծից, և՛ այն բանից, որ չեմ հասկացել ու հիմա դիտողություն են անում: Իսկ նա ցախավելը ձեռքս խոթեց, ինքը գնաց կրաջուր պատրաստելու: Փոշու ամպը բռնեց թոնրատնի բակը: Մի քանի անգամ դույլերով գետակից ջուր բերեցի, բակը ջրջրհանեցի, որ փոշին շատ չնեղացնի ընկերներիս: Հետո թոնրատնից մտա, որպեսզի մաքրեմ նաև ներսը:

— Սպասի՛ր,— Վարսենիկը չթողեց շարունակեմ,— առաջ ներսն են մաքրում, հետո դուրսը: Էսօր ոչինչ: Վաղը միասին կմաքրենք: Զվերը խաշվել են, գնանք, մի բան ուտենք:

Անխոս հետևեցի: Թոնրատնից կից փոքրիկ կացարան էր, փայտե զույգ թախտերով, տախտակից պատրաստած փոքրիկ սեղանով, մեջտեղում թիթեղյա ժանգոտ վառարան կար դրված: Տաք օրերին դրսի օջախն էին վառում: Ամառվայա ցուրտ էր, Մնացը վառարանը թեժացրել էր, որ տաքանանք, թեյ տաքացնենք, ձու խաշենք, նաշ պատրաստենք: Ննդի հարցը լավ էինք կազմակերպում: Տնից հաց էինք բերում, մեկ-մեկ հավ էինք մորթում, Մնացի ասելով՝ առանց դրան չի լինի, նաև պարծենում էր, թե անասնաբույժի հետ լեզու է գտել, ակտավորելիս մի քանիսն ավելացնում է: Եվ այդ մի քանիսի հաշվին հավ էինք ուտում:

— Գրողը քեզ տանի, Սաթո, չես թողել ձուն կարգին խաշվի,— Մնացը թերխաշ ձվի պարունակությունը շալվարին թափեց:

— Գրողը քո տատմորը տանի: Ես մեղավո՞ր եմ, որ աչքերդ տեղերը փոխել են:

— Գնացիր եկար, աչքերիս կպա՞ր: Հազար եմ ասել, որ թերխաշ ձու չեմ սիրում: Թող մի քիչ ավել եռա:

— Մենք էսպես ենք սիրում:

— Ախր, դու հաշվի առ, որ երեք կինարմատով մի տղամարդ եք պահում, պետք է ամեն բան իմ կամքով լինի:

— Մեռնես, քեզանից պրծնենք:

— Ձեզ պահողը ես եմ: Որ ես չլինեմ, ուրուրները հավերին թողած ձեր աչքերը կհանեն, աղվեսները մի ժամում վերջները կտան:



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՓԵՏՐՈՍՅԱՆԻ

— Աղվեսից ինչո՞վ ես պակաս։

Իրար լավ գիտեն, չեն վիրավորվում։

— Մնա՛ց, հլա հաշվի՛ր,— Վարսենիկը ընդհատում է նրանց,— կյանքիդ մեջ քանի՞ անգամ ես ձեր տանը գիշերել։

— Որ էդքան կարողանայի հաշվել, պրոֆեսոր դառած կլինեի, էս չոլերում ի՞նչ գործ ունեի։

Ուրախ քրքջում են։ Իմ ծիծաղն էլ է գալիս, երբ Մնացին դնում եմ ինձ քննող դասախոսի տեղը։ Ասում էին նա պրոֆեսոր է։ Իմ տեսած առաջին պրոֆեսորն էր և իմ պատկերացմամբ պրոֆեսորները հենց այդպիսի կերպարանք են ունենում՝ հաղթանդամ, լայն ճակատով, լուրջ ու խոհուն կեցվածք։ Մաթեմատիկայի բանավոր քննության ժամանակ ես պատասխանում էի, նա ուշադիր լսում էր։ Մի տեսակ տագնապ էի զգում նրա ուշադիր լսելուց։ Հետո հարցեր տվեց, հետո խնդիրներ առաջարկեց, արագ-արագ լուծեցի։ Սկզբում ձեռքս դողում էր, ասաց՝ հանգիստ գրիր։ Նրա հանգիստ բառից ավելի անհանգստացա, ավելի արագ գրեցի։ Հետո ստուգման թերթիկս վերցրեց, երկար նայեց։ Գրավորը «գերազանց» էի ստացել, կողքին մի «լավ» ավելացրեց, մեկնեց ինձ։ Վերջին քննությունն էր և ասաց՝ շնորհավորում եմ, ընդունվել ես, այսօրվանից ուսանող ես, համոզված եմ, որ լավ կսովորես։ Է՛հ, նրան էլ հուսախաբ արեցի, նրան՝ իմ ճանաչած առաջին պրոֆեսորին...

— Արուս բալա՛,— Մնացը մտքերից հանում է,— մեր միջի գրագետը դու ես, էսօր հավերը հաշվելու ենք, տարվա վերջ է գալիս, Աղասին զգուշացրեց, որ նախ մենք հաշվենք, հետո՝ հանձնաժողովը։

— Էլի գլխիցդ բան հնարեցի՞ր,—

Սաթոն առարկեց,— թառի վրա հավ ե՞րբ ես հաշվել:

Նախաճաշն ավարտվում է: Դուրս ենք գալիս փոքրիկ կացարանից: Դեկտեմբերյան քամու սառնությունը մըտքերս ցրում է ու ակամայից ցախավելն եմ որոնում: Մնացը շտապում է իր ոչխարների մոտ, քիչ հետո ավանակի թոկից բռնած մոտեցնում է փալանին: Նախ փոքրիկ խուրջինն է գցում, ապա ինքը նստում: Նրա գյուղ գնալու ժամանակն է: Գնում է կարգավորելու մեր գործերը, հանդիպելու վարիչին ու անասնաբույժին, նրանց տեղյակ պահելու ֆերմայի իրադարձություններին:

Մնում ենք երեքով: Կանայք շտապշտապ գոգնոցները են կապում, որպեսզի թափված փետուրները հավաքեն:

— Արո՛ւս ջան, խի չե՞ս դու էլ բըմբուլ հավաքում,— ասում է Վարսենիկը,— օժիտիդ համար բարձ կկարես:

— Եսիմ,— ուսերս եմ թոթվում:

— Եսիմով բան չի դուրս գալ, բալա՛: Էս բմբուլները, որ մենք չհավաքենք, իզուր տեղ կորչելու են: Քամին տանելու է, ափսոս են, վաղը գոգնոց կբերես:

Նորից ուսերս եմ թոթվում, իսկ նըրանք եռանդով թռչնանոցի բակի փետուրներն են հավաքում: Ամբողջ օրը չեն նստում, հետո տրտնջում են, թե մեջքներս ցավում է, հոգնում ենք, չենք կարող շարժվել: Դա հերիք չէ, մեկմեկ բռնում են հավերին՝ նրանց ծղըրտոցների վրա ուշադրություն չդարձնելով, թևերի ու պոչի երկար փետուրները հանում, իրենց ասելով, ավելորդ փետուրները: Մնացը դրա համար նըրանց չի նախատում, որովհետև մի անգամ անասնաբույժն ասել է, որ թռչունների առողջության համար դա օգտակար է:

(շարունակելի)




## «ՏՆԱՅԻՆ ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ՄԻ՛ ՏՎԵՔ»

Մի աշակերտուհի արցունքն աչքերին խնդրում էր իրեն տնային հանձնարարություն չտալ: Պարզվեց, որ դասերից հետո նա աշխատում է. մինչև ուշ երեկո բժշկական քարտեր է լրացնում մի մասնավոր կլինիկայում: Նրա հետ միասին աշխատում են ևս երեք դպրոցական: Կլինիկայի տնօրենը նըրանց ասել է, որ դա քննություն է և որ ինքը աշխատանքի է ընդունելու նրանցից միայն մեկին՝ ամենաջանասերին:

ԳՖՀ-ում նման աշխատանքը «փորձնական» է կոչվում: Տնօրենը որևէ տըղայի կամ աղջկա աշխատանքի է վերցնում իբրև թե փորձաշրջանով (այն կարող է չափազանց երկար լինել) և ստիպում է աշխատել մեծահասակներին հավասար, միայն թե առանց վըճարի:

Ներկայումս ԳՖՀ-ում աշխատում են ավելի քան 800 հազար երեխաներ: Նրանցից 70 հազարը փոքրիկ թերթավաճառներ են, 100 հազար տղաներ ու աղջիկներ աշխատում են ֆերմաներում, 30 հազարը՝ առևտրում և տրանսպորտում, 20 հազարը արդյունաբերության մեջ, 10 հազարը խորտկարաններում են ծառայում կամ լվացքատներում զբաղված են կեղտոտ սպիտակեղեն կրելով:

Նրանք գրոշներ են ստանում: Տերերը թույլ չեն տալիս, որ նրանք լավ մասնագիտություն ձեռք բերեն: Իսկ փոքրիկ բատրակների ծնողները լըռում են: Չէ՞ որ նրանք կամ գործազուրկ են, կամ այնքան քիչ են վաստակում, որ որդու կամ դստեր բերած մի քանի մարկն էլ մեծ օգնություն է ընտանիքի համար:





ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

«Пионер»-ից

# ՀԱՑԻ ԿՏՈՐԸ

Մեր դասարանում անընդհատ խոսք է բացվում հացի մասին: Իսկ ես միշտ հիշում եմ մի տհաճ դեպք: Ամեն անգամ, հիշելիս, աչքերս արցունքով են լցվում:

Այն ժամանակ ես հինգերորդ դասարանում էի:

Մի անգամ դասամիջոցին նկատեցի, թե ինչպես մեր դասարանցի մի աղջիկ սպիտակ հացի կտորը նետեց աղբարկղը:

Նրան ես միշտ էլ լավն էի համարել: Նա գերազանցիկ էր: Ու հանկարծ... Ես մոտեցա նրան ու հարցրի, թե ինչու՞ այդպես արեց: Ավելի լավ էր՝ տաներ գցեր այն դույլի մեջ, որով ճագարներին էին կերակրում: Սակայն աղջիկն ինձ ընդհատեց քմծիծաղով. «Իսկ դու՛, Նատա՛շա, վերցրու՛ և ի՛նքդ կեր այդ հացը»: Ես այլևս չկարողացա որևէ բան ասել և դուրս վազեցի դասարանից: Վատ է, իհարկե, որ չկարողացա ապացուցել նրա արարքի ստորությունը: Բայց ես հիշեցի իմ պապին, որը սովից, հենց դաշտում մահացել էր պատերազմի ժամանակ, հիշեցի մեծերի պատմածը Լենինգրադի բլոկադայի սարսափների մասին ու չդիմացա, լաց եղա:

Ես չեմ ասի այն աղջկա ազգանունը, որովհետև ամաչում եմ նրա համար:

*ՆԱՏԱՇԱ ՌՈՒԴԵՆԿՈ*
*Մորդովական ԱՍՍՀ,*
*գ. Բ. Կուզմինո*

# ՉԿԱՅԱՑԱԾ ՄԵՆԱՄԱՐՏ

Ես ընկերություն էի անում մի աղջկա հետ: Միմյանց գիտեինք դեռ նախադպրոցական տարիքից: Մեր ընկերության վրա ոչ ոք չէր ծիծաղում, և մեր ծնողներն էլ դեմ չէին: Չկարծեք, թե դասերս աչքաթող էի անում. դեռ սպորտով էլ էի պարապում: Ինձ թվում է, թե դպրոցական մրցումներում ես հաղթեցի, որովհետև ինձ համար «ցավում» էր այդ աղջիկը, միշտ կողքիս էր: Ես նրան նվիրված բանաստեղծություններ էի գրում, որոնք նրան դուր էին գալիս:

Աշնանը մեր դասարանում մի նորեկ հայտնվեց: Եվ աղջիկը սկսեց խուսափել ինձանից: Հետո մի անգամ ասաց, որ լավն է այդ տղան, որ նրա հետ ավելի հետաքրքիր է: Ես մտածեցի. «Ուրեմն ես վատն եմ, ինձ հետ էլ տխուր է»,— իսկ բարձրաձայն կմկմացի. «Այո՛, այո՛ իհարկե»: Շատ ծանր ու ցավոտ տարա այդ ամենը: Հետո ինքս էլ ասել-խոսել սկսեցի նորեկի հետ: Մենամարտի հո չէի՞ կանչելու, նրա համար, որ նա դուր է գալիս աղջկան:

*ԱԼԻԿ Կ.*
*Ալթայի երկրամաս*



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# ՁԵՌՆՈՑԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Սեթը դպրոցից տուն էր գնում։ Առաջին անգամ առանց ծնողի կամ մեծերից մեկնումեկի ուղեկցության։ Անշուշտ ծնողի թույլտվությամբ, նրա հոժար կամքով. այդ հոժարությունը մոտավոր էր, որովհետև նախորդ օրը ինքը խնդրել էր, աղաչել, համոզել։ Չափահասության դիպլոմի նման մի բան էր այդ թույլտվությունը, որն ստացել էր, անշուշտ, նախազգուշական խրատների մի ամբողջ շարանի հետ։

Նա մի երկու անգամ ետ նայեց. արդյոք իրեն չե՞ն հետևում՝ ստուգելու համար երթևեկության կանոնների հանդեպ ունեցած իր գործնական հարգանքը։ Ոչ, չեն հետևում, այլապես պիտի փչացնեին այդ նորահայտ ինքնուրույնության բավականությունը։

Հանկարծ նա նկատեց, որ ձեռնոցի մեկը չկա։ Կորել էր աջը։ Ա՜յ թե հիմա տանը հանդիմանելու բան կգտնեն։ Ձեռնոց էիր, էլի, տեղումդ մնայիր։ Ձախը քեզանից ինչո՞վ էր պակաս, որ խելոք մնացել էր պիջակի տաք գրպանում։ Իսկ հիմա ձախն ինչի՞ համար պահի, ո՞ւմ է պետք ձախ ձեռնոցն առանց աջի։ Ձախը պիտի լինի իզուր հիշեցում մոլորյալ անպիտան եղբոր մասին, և՛ ափսոսանք, և՛ հանդիմանություն։ Ու Սեթը մյուսը՝ ձախը, ամենայն քաղաքավարությամբ գցեց մայթեզրին տնկված հերթական աղբարկղի մեջ։ Այդպես գուցե ծնողները չընկատեն, չէ՞ որ ձեռնոցի աջն էլ, ձախն էլ շատ հեռու են նրանց գլխավոր մտահոգությունը լինելուց։

Եվ իսկապես էլ ծնողներին առաջին հերթին հետաքրքրեց մինուճար որդու ողջ-առողջ տուն հասնելը, իսկ մայրը ուրիշ ձեռնոց կհյուսեր կամ կգներ խանութից։ Եվ հաջորդ օրվա գլխավոր պատվիրանը ձեռքերը գրպաններում պահելն էր ու չմրսեցնելը։

Հաջորդ օրը Սեթը ձեռքերը գրպաններում, նույն ճանապարհով դպրոցից տուն էր վերադառնում, երբ մայթեզրի հերթական տերևաթափ ծառի շուրջը տեսավ խմբված անցորդների։ Մոտեցավ և ի՞նչ տեսնի... իր իսկ կորցրած ձեռնոցից, նույն աջ եղբորից, ծառի ճյուղերի վրա տերևանման կախվել էին մոտ երկու տասնյակ ձեռնոցներ։ Չափահասները բերանաբաց նայում էին ու դատողություններ անում։ Չէին զարմանում միայն երեխաները։ Նրանցից մեկը գոռոզացավ.

— Ես այդ ձեռնոցներից մեկը երեկ տեսա մայթին ընկած և դրի ճյուղի վրա, որպեսզի ով կորցրել է, հեշտ գտնի։

— Ա՜հ, ի՞նչ օգուտ,— հիասթափեցրեց մի ծեր կին,— բոլոր ձեռնոցներն աչքն են։ Աստված չանի, այդքան միթևանի երեխաներ լինեն։

— Ցրվեցե՛ք, ցրվեցե՛ք,— ասաց մի միլիցիոներ,— դուք խանգարում եք երթևեկությունը։

Անցորդները դանդաղ ցրվում էին, բայց ավելանում էին նորերը։ Սեթն ինքն իր մեջ փքվել էր։ Ախր ինքը դարձել է այդ մեծ իրադարձության պատճառը։ Թեկուզ պատահական, բայց եթե ձեռնոցը չկորցներ, չէր լինի այս իրարանցումը։ Եվ . չհամբերեց ու բացականչեց բարձր ու հստակ.

— Սա ի՛մ ձեռնոցն է, մայրս է գործել։

Հետաքրքրվողները շրջվեցին դեպի փոքրիկը և մի նեղ շրջանակ կազմեցին, որի կենտրոնում գտնվում էր, մյուս երեխաների կարծիքով, իրենցից ամենաստախոսն ու պարծենկոտը։

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց մեկը նրան։

— Սեթ։

— Սա էն հայտնի փնթի Սեթը չէ՞,— նկատեց մեկ ուրիշը։

— Սեթ,— ասաց մի այլ կասկածամիտ,— հապա նույն ձեռնոցի ձախը ցույց տուր, տեսնեմ։

— Նետել եմ աղբանոցը,— պատասխանեց Սեթը շփոթվելով։

Մեծերն էլ, երեխաներն էլ ծիծաղեցին Սեթի վրա։

— Ճի՛շտ եմ ասում, ազնի՛վ խոսք— գոչեց Սեթը։

— Այդ ես եմ ձեռնոցը պատվաստել ծառին,— հպարտացավ այն առաջին երեխան։

Սեթին մոռացան, ոնց որ չի էլ եղել, և շրջվեցին դեպի հրաշքի հեղինակ հրաշք երեխան։

—Քանի՞ տարեկան ես,— հարցրեց նրան մեկը։

—Տասնչորս,— ասաց տղան,— սովորում եմ յոթերորդ դասարանում։

—Ես քեզ առանց քննության ընդունել կտամ գյուղատնտեսական ուսումնարան,—ասաց տպավորիչ գլխարկ դրած տպավորիչ մի տղամարդ։

Սեթը ուշացած հասավ տուն, մորը կցկտուր պատմեց այն, ինչ առանց սեփական աչքերով տեսնելու, չէր հավատա ոչ մի չափահաս։

Իսկ հետո կատարվածը, ցավոք, դարձյալ տեղի ունեցավ առանց Սեթի մասնակցության։ Առավոտյան, երբ նա դպրոց էր գնում, այն հռչակավոր ծառի վրա ոչ մի ձեռնոց չկար։ Կային հատուկենտ ուշացած հետաքրքրվողներ, որոնք ուշացած դատողություններ էին անում։

—Գիշերը ճնճղուկները քանդել են ձեռնոցների բրդի թելերը, իրենց ձագուկների համար և իրենց համար հյուսել են բրդե գլխարկներ, ջեմպրներ, գուլպաներ, ձեռնոցներ։

—Հեքիաթ մի՛ պատմիր... Ցույց տուր ինձ գոնե մի ճնճղուկ, որն ունենա բրդե գլխարկ, ջեմպր, գուլպա, ձեռնոց...

—Այդ հագած-կապած ճնճղուկներն ապաստանել են երեխաների սարքած փայտե բների մեջ,— շարունակեց հեքիաթասացը։

Եվ առանց միլիցիոների կարգադրության, ուշացած հետաքրքրվողները ցրվեցին, և Սեթը բնականաբար դպրոց հասավ ուշացումով։ Հայոց լեզվի և գրականության դաս էր։ Ուսուցիչը խոժոռելով ասաց.

— Արագ տե՛ղդ նստիր։

Նա երեխաներին պատվիրել էր գրել ազատ թեմայով շարադրություն։ Սեթը գրեց «Ձեռնոցը» վերնագրով այս կիսաֆանտաստիկ պատմությունը հայտնի Փնթի Սեթի հետնորդի մասին, որ ինքը էր։

# «ԻՄ ՀԱՅՐԻԿԸ»

Երևանի № 46 դպրոցի աշակերտների շարադրություններից

## ԻՄ ՍԻՐԵԼԻ ՀԱՅՐԻԿԸ

Ես իմ հայրիկից չեմ դժգոհում, սիրում եմ նրան: Իմ հայրիկը և մայրիկը ինձ պահել մեծացրել են, և ես դժգոհելու իրավունք չունեմ:

Մեր ընտանիքը բաղկացած է 6 հոգուց, բայց հորեղբորս տղան, որի հայրը մահացել է սրանից 15 տարի առաջ, իսկ մայրը լքել, ապրում է մեզ հետ և սովորում է համալսարանում: Մեզ հետ է ապրում նաև տատիկս: Ճիշտ է, մեր ընտանիքը ծանրաբեռնված է, բայց մենք ընտանիքով համարում ենք, որ լավ, շատ լավ ենք ապրում: Ոմանք կարծում են, թե հայրս աշխատանքից տուն գալիս իր հետ հարստություններ է բերում, բայց իմ հայրը անմաքուր բաներից զզվում է:

Ճիշտ է, իմ հայրը դպրոց հաճախ չի գալիս, որովհետև ժամանակ չունի, նա՝ իմ սիրելի հայրիկը, առավոտյան ժամը 8-ին գնում է, երեկոյան ժամը 8-ին գալիս, որովհետև նրա աշխատանքը ծանր է, նա հոգնած գալիս է և հետո զբաղվում մեզանով: Նա շատ է ուրախանում, երբ լսում է, որ «հինգ» կամ «չորս» ենք ստացել: Նա սիրում և հարգում է իմ մայրիկին:

Նա ցանկանում է, որ ես ընդունվեմ համալսարանի օտար լեզուների բաժինը, սակայն դպրոցում մի քանի առարկայից թույլ եմ, և ինձ ասում են, որ դպրոցից դուրս գամ, բայց ես պետք է կատարեմ իմ հայրիկի ցանկությունը:

Ես ուրախ եմ, որ ունեմ այդպիսի բարի հայրիկ: Խնդրում եմ, ընկե՛ր Աբելյան, թույլ տաք, շարունակելու դպրոցը:



## ՓՈԽԱԴԱՐՁ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ

Հայրս բանվոր է: Նա թեպետ շատ խստապահանջ է, բայց շատ էլ բարեհոգի է: Մենք հարգում և սիրում ենք նրան: Ես ունեմ բչախոս հայրիկ: Մեր դաստիարակությամբ հայրիկս է զբաղվում: Երեկոյան ժամը 5-ին գալով տուն, առաջին գործն է լինում հետաքրքրվել մեր դասերով: Պատահում է, որ շատ հոգնած է տուն գալիս, չի հասցընում զբաղվել մեզանով, բայց մենք անպատրաստ երբեք չենք ներկայանում դպրոց: Այսքանի հետ մինչև այս տարվա հունվարի 0 ժամ 1 րոպեն հայրիկս երկու տհաճ բան ուներ՝ ծխելը, նաև խմելը, որոնցից մեկին արդեն վերջ է տվել:

Հորիցս սովորում եմ հյուսնություն, որը մարդուն միշտ և ամեն տեղ պետք է:

Մեր ընտանեկան հարաբերությունները շատ լավ են: Մեծ մասամբ փոխադարձ հոգատարության շնորհիվ:

Ես ունեմ շատ լավ հայրիկ:

# ՀՐԱՇՔ—ՎՐՁԻՆԸ

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ

Նոր տարվա գիշերը Բակուրիկը շատ նվերներ էր ստացել, նրանց թվում և մատիտներ ու վրձին՝ նկարիչ հորեղբորից:

Առավոտյան նա սկսեց մեկիկ-մեկիկ դասավորել նվերները. գրքերը, մատիտներն ու վրձինը, ավտոմեքենան ու ձիուկը, ինքնաթիռը, կոնֆետները: Երբ ամեն ինչ դասավորել էր արդեն, նորից ձեռքն առավ տետրն ու վրձինը. այնպես լավն էր թմփլիկ ճնճղուկը ծառի ճյուղին: «Նկարեմ ճնճղուկին»,— մտածեց Բակուրիկն ու սկսեց: Նկարել էր, չէր նկարել, ճնճղուկը կենդանացավ՝ ծիվ-ծիվ, պտույտներ գործեց սենյակում և բաց օդանցքով դուրս թռավ:

Այ քեզ բան... Բակուրիկը սկսեց ուշադիր զննել վրձինը, ուրեմն կախարդակա՞ն է:

Այս ամենը տեսնում էր զարդարված տոնածառի տակ կանգնած Ձմեռ պապը և քթի տակ ժպտում: Վրձնին Ձմեռ պապն էր կախարդական հատկություն պարգևել:

Բայց ինչպես ամեն ինչ՝ վրձնի կախարդանքն էլ իր սահմանն ուներ: Նա կախարդական էր միայն Նոր տարվա առաջին օրը: Այս մասին Բակուրիկին ասաց զարդարված տոնածառի կողմից եկող մի ձայն:

Բակուրիկը կարծեց թե տոնածառն է ասում: Բայց ասողը Ձմեռ պապն էր:

«Ուրեմն պետք է շտապել»,— մտածեց Բակուրիկը:

Նա բակ ելավ: Պապիկի տնկած խաղողի տունկը դեռ աշնանը սկսել էր չորանալ: Չար տղաները ածելիով կտրել էին նրա բունը: Բակուրիկը վրձինը մի քանի անգամ տարավ ու բերեց նրա բնի վրայով:

Իհարկե, ձմեռ էր, տունկը չէր կարող հիմա կանաչել, բայց գարնանը անպայման կկանաչեր:

Մոտակայքում թափառում էր չգիտես որտեղից հայտնված անտուն մի շնիկ:

«Տերերը մոռացել են նրան»,— մտածեց Բակուրիկն ու ցանկապատի տակ, ձյան վրա նրա համար փոքրիկ ու հարմար մի բույն նկարեց: Նկարել էր, չէր նկարել՝ բույնն իսկույն դարձավ իսկական:

Մութն ընկնում էր արդեն, օրն ավարտվելու վրա էր, վրձնի կախարդանքն էլ հետը, և Բակուրիկը շտապում էր, շատ էր ուզում նավակ նկարել, իր ուզածի պես, որպեսզի նավակը... դառնար իրական: Բայց հիշեց հարևան բակում ապրող Խաչիկ պապին: Խաչիկ պապը կույր էր:

Եվ Բակուրիկը նորից տնից դուրս թռավ: «Այդ ո՞ւր»,— հարցրեց մայրիկը: «Հիմա կգամ»,— գոչեց Բակուրիկն ու վազեց:

Երբ Բակուրիկր շնչակտուր ներս ընկավ Խաչիկ պապենց տուն, տնեցիները նստած հեռուստացույց էին նայում, իսկ Խաչիկ պապը յուռ ընկղմրված իր բազկաթոռի մեջ՝ համրիչի հատիկներն էր շարժում... Նա չէր կարող հեռուստացույց նայել:

Բակուրիկր մոտեցավ և վրձինը քսեց նրա աչքերին:

Խաչիկ պապի աչքերը առողջացան, Խաչիկ պապն սկսեց տեսնել. ի՜նչ ուրախություն էր:

Օրը վերջանում էր, վրձինը շուտով դառնալու էր սովորական, բայց Բակուրիկը շատ գոհ էր. օգնել էր խաղողի չորացած տունկին, անտուն շնիկին բույն էր պարգևել և ամենակարևորն է՝ վերադարձրել էր Խաչիկ պապի տեսողությունը:

# ՆՇԱՆԱԿԵՏԸ ՕԼԻՄՊԻԱԴԱՆ Է

Մականախաղը համեմատաբար նոր մարզաձև է մեր երկրում, սակայն արդեն շահել է շատ-շատերի համակրանքն ու, բնականաբար, լայն տարածում գտել: Ուրախալի է, որ համամիութենական մրցաբեմերում իրենց լավագույն կողմերով են դրսևորում մեր հանրապետության պատանի մականորդները: Առաջին լուրջ հաջողությունը գրանցվեց մրցաշրջան 76-ում, երբ Հրազդան քաղաքի մարզապալատի պատանեկան հավաքականը նվաճեց ՍՍՀՄ չեմպիոնի ոսկե մեդալը: Հրազդանցի մարզիկները հետագա հինգ տարիներին ևս հուսախաբ չարեցին իրենց երկրպագուներին, մեկ անգամ ևս արժանանալով բարձրագույն պարգևներին, իսկ երեք անգամ էլ տուն բերելով արծաթե ու բրոնզե մեդալները:

Եվ ահա մի նոր նվաճում: Ուզբեկստանի Սամարղանդ քաղաքը հյուրընկալել էր ՍՍՀՄ պատանեկան առաջնությունը վիճարկող այն վեց ուժեղագույն թիմերին, որոնք եզրափակիչ փուլի ուղեգրեր էին ստացել: Նրանց մեջ էր նաև Հրազդանի մարզադպրոցի հավաքականը: Թիմի մարզիչներ Ժ. Մկրտչյանը և Վ. Վարդանյանը առաջադրանք էին տվել իրենց սաներին ցուցադրելու անկաշկանդ ու բովանդակալից խաղ: «Պարգևների մասին չմտածեք, մեզ ամենից առաջ հետաքրքրում է, թե որքանով կգոհացնեք հանդիսականներին ու մասնագետներին, իսկ մեդալները... դրանց մասին հետո»,— հանդիպումներից առաջ այս խոսքերով էին դեպի խաղադաշտ ուղեկցում թիմին նրա ղեկավարները:

Մեկնարկում հրազդանցիների մրցակիցն էր Շոստկայի «Սվեման»: Սկզբում դժվար էր: Սակայն աստիճանաբար հայ մականորդները տիրեցին նախաձեռնությանը, մի շարք արդյունավետ գրոհներ ձեռնարկեցին և ի վերջո 4:2 հաշվով հաղթանակ տարան: Հաջորդ տուրերում պարտության մատնելով Ֆերգանայի «Քիմիկին» (3:0), Ուլյանովսկի «Վոլգային» (1:0) և Լենինսկի «Ստարտին» (3:1), վերջին հանդիպումը 1:1 հաշվով ավարտելով Երևանի «Նաիրիի» հետ, հրազդանցի մարզիկները տեղ գրավեցին պատվո պատվանդանի առաջին աստիճանին:

Չեմպիոններից իրենց լավագույն կողմերով դրսևորեցին Հ. Ղազարյանը, Վ. Մարգարյանը, Ժ. Հակոբյանը, Ա. Ասատրյանը... Թիմի ռմբարկուն Մ. Ասատրյանն էր, որը յոթ անգամ գրավեց մրցակիցների դարպասը:

Հրազդանցիների հաջողությունն օրինաչափ է: Քաղաքի մարզադպրոցում բարձր հիմքերի վրա է դրված կարգային մականորդների պատրաստման գործը: Առավել շնորհալիները պատանեկան մրցասպարեզներում թրծվելուց հետո, համալրում են վարպետ թիմերի կազմերը:

Դպրոցի ղեկավարների և մանկավարժական կոլեկտիվի մերձավոր նպատակակետն է՝ մոտ ապագայում իրենց ներկայացուցիչներն ունենալ ՍՍՀՄ օլիմպիական հավաքականում:

ԷԴ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԵԹԵ ՓԻՍՈՒՆ... ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Եթե փիսոն գնար մառան
Հագած փափուկ մորթը գառան,
Պոչը ծալեր,
Աներ դմակ,
Իբրև, տեսեք, գառ եմ հիմա,
Մայեր, իբր տխուր-տխուր,
Իբր՝ ես ու՞ր,
Մռռանը՝ ու՞ր...
Իբր՝ այնտեղ դաշտ ու հովիտ,
Կանաչ դրախտ այծ ու կովի...
Իսկ ես, այստեղ՝ մութ մառանում,
Իմ ով լինելն եմ մոռանում...
Գուցե մկներն հավատային,
Դուրս թափվեին,
Գլուխ տային,
Ասեին՝ ո՞վ դմակավոր,
Արի՛ դարձիր մեզ թագավոր:
Մոտ մի՛ թողնի մեր մառանին
Մլավանին ու մռռանին,
Ու մեզ վրա, քաջդ բարի,
Թագավորիր հազա՞ր տարի...



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Եթե փիսոն չաղ ու ծույլիկ
Գլխին պոզեր դներ ուլի,
Մութ մառանում տրտինգ տալով,
Ցատկոտելով, մկկալով
Ինչի համներ՝ պոզահարեր,

Իրեն ուխն վայել [illegible]...
Գուցե մկներն հավատային,
Դուրս թափվեին,
Գլուխ տային,
Ասեին՝ ո՞վ քաջ պոզավոր,
Արի՛ դարձիր մեզ թագավոր:
Մոտ մի՛ թողնի մեր մառանին
Մլավանին ու մռռանին,
Ու մեզ վրա, քաջդ բարի,
Թագավորիր հազա՜ր տարի...



Եթե փիսոն, ա՜յ քեզ կատակ,
Գլխին դներ կարմիր կատար,
Ուռած, փքված,
Գոռոզ-մռոզ,
Բոխախը՝ կախ,
Աչքը՝ պոլոզ,
Սուտ կտուցը ոսկով օծուն,
Ցատկեր նստեր հին խնոցուն
Ու մառանում,
Ինչպես գյուղում,
Զլեր հրաշք իր ծուղրուղուն...
Գուցե մկներն հավատային
Դուրս թափվեին,
Գլուխ տային,
Ասեին՝ ո՞վ քաջդ աքլոր,
Արի՛ դարձիր մեզ թագավոր:
Մոտ մի՛ թողնի մեր մառանին
Մլավանին ու մռռանին,
Ու մեզ վրա, քաջդ բարի,
Թագավորիր հազա՜ր տարի...
Եթե փիսոն...





ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆ

# ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑՆ ՈՒ ՔԱՀԱՆԱՆ

*(Հայկական բանահյուսությունից)*

Ժամանակին մի վաճառական է լինում, անունը՝ Փառնակ: Ինքն ու կինը էին, զավակ չունեին: Դա նրանց միակ վիշտն էր:

— Տե՛ր հայր,— մի անգամ դիմեց Փառնակը քահանա Կիրակոսին,— ինչքան էլ միտք եմ անում, ես ու կինս ոչ մի մեղք չենք գործել, ինչու՞ է աստված մեզ պատժել, որ զավակ չունենք:

— Օրհնվա՛ծ,—ասաց տեր Կիրակոսը,— ես էլ եմ միտք անում, թե ի՞նչ մեղք եք գործել աստծու առաջ: Ասա տեսնեմ, գոնե մի անգամ գնացե՞լ ես Երուսաղեմ, համբուրե՞լ ես աստծու զավակի՝ Քրիստոսի շիրմաքարը:

— Ո՛չ, տե՛ր քահանա,— շփոթված պատասխանեց Փառնակը,— ամեն տեղ եղել եմ. էլ Չինաստան, էլ Հընդկաստան, էլ Արաբստան, էլ Հաբեշըստան, էլ ուր ասես, մենակ Երուսաղեմում չեմ եղել:

— Օրհնվա՛ծ,— ասում է քահանան, — հենց էդ մեղքի համար էլ աստված խռովել ու ձեզ զավակ չի տալիս, է՞:

Փառնակը որոշեց քահանայի խորհուրդն ի կատար ածել: Եկավ տուն, կնոջը հայտնեց, և պատրաստվեցին ճանապարհ ընկնել: Գնալ-գալը տևելու էր քառասուն օր:

— Զարուհի՛,— ասաց Փառնակը,— գնալը՝ գնանք, բան չունեմ ասելու, բայց ու՞մ պահ տանք մեր կյանքի մընացած օրերի համար ետ գցած ոսկին, հո հետներս չե՞նք տանելու:

Երկար մտածեցին, ի վերջո Փառնակն ասաց.

— Զարուհի՛, ինչու՞ ենք երկար մտածում. տեր Կիրակոսին էլ պահ տանք մեր ոսկիները:

— Վա՜յ, ճիշտ ես ասում,— համաձայնեց Զարուհին,— նա աստծու ծառան է, նրանից ազնիվ, հավատարիմ մարդ չենք գտնի, Փառնա՛կ:

Իրենց ճանապարհի ծախսի համար ինչքան պետք էր՝ վերցրին, մնացած ոսկին լցրին մի կոտի մեջ, ու Փառնակը տարավ քահանայի տուն:

— Տե՛ր հայր,— ասաց,— որքան էլ միտք արինք, քեզանից էլ հավատարիմ, ազնիվ մարդ չհիշեցինք, որ մեր վերջին օրերի համար ետ գցած ոսկին պահ տանք:

Քահանան աչքերը չռեց, երբ տեսավ մի կոտ ոսկին ու ասաց.

— Օրհնա՛ծ, դիր ա՜յ էն ամբարի վրա. ոչ ոք քո ոսկուն ձեռք չի տա, ծուռ աչքով չի նայի, դու քո ձեռքով դիր, քո ձեռքով էլ ինքդ կգաս կվերցնես: Բարի ճանապարհ ու բարի վերադարձ, աստված ձեր մեղքերը քավի, ձեր հոգիները դրախտը գնան:

Օրհնեց քահանան, բարի ճանապարհ մաղթեց:

Վաճառական Փառնակն ու իր կին Զարուհին գնացին Երուսաղեմ:

Քահանա Կիրակոսը հաշվում էր օրերը: Քառասուներորդ օրը վաղ վեր կացավ, դատարկ կոտը վերցրեց և գնաց շուկա: Գյուղացիներն իրենց այ-

գիների բերքը կողովներով բարձել էին ավանակներին ու շուկա բերել: Տեսնելով քահանային՝ ամենքը գլխարկ էին հանում:

— Օրհնյա՜ ի տեր,— ասում էին նրանք:

— Աստվա՜ծ օրհնե, զավակնե՜րս, աստվա՜ծ օրհնե,— պատասխանում էր քահանան և առաջ գնում:

Վերջապես կանգ առավ մի կողովի առաջ, որի մեջ ոսկու պես փայլում էր դեղին կեռասը: Քահանայի ուզածը հենց դա էր:

— Օրհնված,— դիմեց քահանան կողովի տիրոջը,— ոսկու գույն ունի կեռասդ, էս կոտը լցրու՛ տուր ինձ:

Գյուղացին ուրախացավ, որ քահանան առաջ իրենից է գնում կատարում, ուրեմն գործերը հաջող կգնան: Կեռասը լցրեց կոտը և մեկնեց քահանային:

— Ի՞նչ պետք է տամ, օրհնա՛ծ,— դիմեց քահանան:

— Տե՛ր հայր,— պատասխանեց գյուղացին,— ինձ համար մեծ բախտ ու հաջողության նշան է, որ առաջ դու ես իմ ապրանքը գնում: Քեզնից ոչինչ չեմ ուզում, քո օրհնանքն էլ ինձ բավական է:

Քահանան ուրախացավ, օրհնեց հավատացյալ գյուղացուն ու գնաց տուն: Կեռասով լի կոտը, որի մեջ եղած ոսկին ինքն էր դատարկել, նույնությամբ դրեց տեղը:

Կեսօրին լուր տարածվեց, որ ուխտագնացները վերադարձել են:

Փառնակը գնաց քահանայի տուն՝ իր պահ տվածը ետ վերցնելու:

— Օրհնվա՛ծ,— ասաց քահանան,— ինչպես որ դրել ես ամբարի վրա, էնպես էլ քո սուրբ ձեռքով վերցրու քո ամանաթը:

Փառնակը շնորհակալություն հայտնեց և ամբարի վրայից իջեցրեց կոտը: Իջեցրեց ու մնաց քարացած...

— Օրհնված, ի՞նչ պատահեց, ինչու՞ զարմացար ու քարացար:

— Տե՜ր հայր... տե՜ր հայր... սա ոսկի՜ չի, կեռա՜ս է...

— Ի՞նչ, ի՞նչ, ինչ ասացի՞ր,— կեղծ բարկացավ Կիրակոսը,— ինչպե՞ս թե՝ ոսկի չի, կեռաս է: Դու կեռա՞ս ես դրել էդտեղ:

— Ինչպե՞ս, տե՛ր հայր, ի՞նչ ես ասում, ես ոսկի եմ դրել:

— Անիծվես դու, ուրեմն աստված չի ներել քո մեղքերը, քեզ պատժել և քո ոսկին կեռաս է դարձրել: Դե շու՛տ, շու՛տ իմ տնից դուրս տար աստծու անեծքը, մի՛ պղծիր իմ սուրբ ընտանիքը,— կեղծ բարկացավ քահանան:



Փառնակը շփոթահար, դողդողալով կոտը դուրս տարավ, գլխիկոր գնաց իր տուն և կոտը դրեց սեղանին: Զարուհին նկատեց, որ Փառնակի դեմքը մռայլ է, գույնը՝ սևացած: Անհանգըստացավ:

— Ի՞նչ է եղել, այ մարդ,— հարցրեց:

— Ա՜յ կնիկ, մեր մեղքը շատ է, աստված մեզ չի ներել, մեզ պատժել է. ոսկին կոտի մեջ կեռաս է դարձել: Մենք մեղավոր ենք, ա՜յ կնիկ:

Զարուհին էլ նայեց կոտի մեջ ու սարսափեց, ի՞նչ մեղք են գործել:

Փառնակը դուրս եկավ, նստեց պատի տակ դրված մեծ քարին, գլուխն առավ ձեռքերի մեջ ու միտք էր անում: Ճանապարհով անցնում էր ուսուցիչ Մեսրոպը: Նա նկատեց Փառնակին:

— Օ՜, վաճառակա՛ն Փառնակ, բարի վերադա՛րձ,— ասաց Մեսրոպը:

— Բարին արևի՛դ, ուսուցի՛չ,— հազիվ պատասխանեց Փառնակը:

— Մռայլ ես, վաճառակա՛ն, ինչու՞:

— Մի՜ հարցնի, ուսուցի՛չ, մեղավոր եմ աստծու առաջ, պատժված:

— Ինչու՞, ի՞նչ է պատահել:

— Ուսուցի՛չ, դու չգիտես, թե աստված ինչ նոր պատիժ է տվել ինձ. մի կոտ ոսկին պահ էի տվել քահանա Կիրակոսին: Մեր մի կոտ ոսկին աստված դարձրել է կեռաս:

— Ի՞նչ, ինչե՞ր ես ասում, վաճառակա՛ն...

— Հա՜, ուսուցի՛չ, չե՞ս հավատում, ե՛կ քո աչքով տես:

Ուսուցիչ Մեսրոպը Փառնակի հետ մտավ տուն ու սեղանին դրված կոտի մեջ տեսավ հասած, դեղին կեռասը:

— Վաճառական Փառնակ,— ասաց,— մի՛ վշտանա, աստված մի կոտ ոսկիդ կեռաս է դարձրել, մի կոտ կեռասը էլի ոսկի կդարձնի: Մի՜ վշտա-



նա և դու՛, տիկի՛ն Զարուհի, համբե-
րեցե՛ք և կտեսնեք…

Ասաց ու դուրս գնաց: Օրը կիրակի էր: Մեսրոպը գնաց քահանա Կիրակոսի տունը: Իրիցկինը պատուհանից նկատեց ուսուցչին և դարձավ քահանային.

— Ա՛յ մարդ, ուսուցիչն անցնում է, կանչի՛ր, հետը խոսիր մեր երեխեքին դպրոց տալու մասին:

— Հա՛, կանչենք:

Իրիցկինը բացեց պատուհանը և ձայն տվեց.

— Տու՛ն համեցեք, ուսուցի՛չ:

Ուսուցիչ Մեսրոպը հենց էդ հրավերին էլ սպասում էր:

— Ուսուցի՛չ,— ասաց քահանան,— տղաներս մեծացել են, ժամանակը չի՞, որ դպրոց գան:

— Դա էլ հա՞րց է, տե՛ր հայր,— ակնածանքով պատասխանեց ուսուցիչը: — Եթե մի երեխայի տարեկան ծախսը տասը ոսկի է, քո երեխաներին կընդունենմ հինգ ոսկով:

Քահանան շատ ուրախացավ, պայմանավորվեցին հենց վաղվանից ուղարկել դպրոց: Ուսուցիչ Մեսրոպը հայտնեց, որ վաղվանից տղաներին կբերեն դպրոց ու մի տարի հետո երեխաները կգնան տուն, էդպես է դըպրոցի կարգը:

— Ինչպես որ կարգն է, ուսուցի՛չ:

Քահանայի երկու տղաները՝ մեկը՝ ութ տարեկան, մյուսը՝ ինը տարեկան, ընդունվեցին Մեսրոպ Մաշտոցի վարժարանը:

Մեսրոպ Մաշտոցը հաջորդ օրը հանդիպեց որսկան Արսենին և խընդրեց, որ իր համար արջի երկու քըթոթ բերի, դպրոցում պետք է:

— Ա…իս վրա, ուսուցի՛չ,— ասաց որսկան Արսենը,— դժվար բան չի ինձ համար, ուզածդ էլ մեծ բան չի:

Երկու օր հետո որսորդ Արսենը կատարեց իր խոստումը:

Մեսրոպ Մաշտոցը իր համար էլ ձեռք բերեց քահանայի հագուստ, ճիշտ էնպիսի, ինչպիսին հագնում էր քահանա Կիրակոսը, և ամեն անգամ քոթոթներին կերակրելիս հագնում էր քահանայի փարաջան: Քոթոթները վարժվել էին նրան հենց էդ հագուստով: Մի ամբողջ տարի պահեց նրանց, կերակրեց: Էնպես էին ընտելացել, որ ամեն ներս մտնելիս ցատկում, նստում էին ուսերին, լպստում էին հագուստը, փաթաթվում էին ոտքերին:

Տարին լրացավ: Քահանա Կիրակոսը գնաց երեխաներին տուն բերելու:

— Ինչպե՞ս են զավակներս, ուսուցի՛չ:

— Վատ են, քահանա, շա՛տ վատ են,— պատասխանեց ուսուցիչը:

— Ինչպե՞ս, հիվա՞նդ են, թե՞ վատ են սովորում,— անհանգստացավ քահանան:

— Երանի թե հիվանդ լինեին կամ վատ սովորեին,— պատասխանեց ուսուցիչը,— ավելի վատ բան է պատահել:

— Մահացե՞լ են, ուսուցի՛չ,— գունաթափվեց քահանան:

— Ո՛չ, քահանա՛, ո՛չ, նրանք ողջ և առողջ են, բայց ասա, դու ի՞նչ ծանր մեղք ես գործել, որ աստված պատժել է քեզ, քո զավակներին արջի քոթոթ է դարձրել:

Քահանա Կիրակոսը սարսափեց. մի՞թե աստված իրեն պատժել է…

— Տե՛ր աստված, դու թողությու՛ն տաս իմ մեղքերին,— մրմնջաց նա:

Նա հիշեց իր գործած շատ մեղքերը և խոսք չէր գտնում ասելու:

— Կարո՞ղ եմ տեսնել զավակներիս,— կմկմաց նա:

— Իհարկե,— պատասխանեց ուսու-

ցիչը,— ոչ միայն կտեսնես, այլև հետդ տուն կտանես զավակներիդ:

Ուսուցիչը քահանայի առաջնորդեց քոթոթների սենյակը: Քոթոթները հենց տեսան քահանային, իսկույն ցատկեցին նրա ուսերին. լպստում էին երեսը, ձեռքերը, շորերը: Քահանան սարսափի մեջ էր, վախենում էր, իրեն թափ տվեց, որ ազատվի, բայց քոթոթները իջնելու միտք չունեին:

— Տե՛ս, է՛, տե՛ր հայր, ինչքա՜ն են կարոտել քեզ, տա՛ր, տա՛ր տուն, իրենց մորն ավելի շատ կլինեն կարոտած:

— Ի՞նչ ես ասում, ուսուցի՛չ,— թոթովեց քահանան,— ես եմ վախենում, ո՞ր մնաց սրանց մայրը: Նա որ տեսնի, սիրտը կպայթի:

— Չե՞ս ուզում տանել զավակներիդ, տե՛ր հայր:

— Օրհնա՛ծ, գնամ իրիցկնոջ հետ խոսեմ, տեսնեմ ինչ է ասում:

— Կարևորը խոսելը չի, տե՛ր հայր. հիշի՛ր, թե ի՞նչ մեղք ես կատարել: Մեղքե՛րդ քավիր, գուցե աստված ների, քոթոթները էլի տղա դառնան:

Քահանան գնաց տուն, եղածը կնոջը պատմեց:

— Ամա՜ն, մա՛րդ աստծո, վաճառականի ոսկիները ե՛տ տուր, դա քո կատարած ամենամեծ մեղքն է, աստված գուցե ների և իմ զավակներին վերադարձնի:

Գիշերը քահանայի քունը չտարավ. շատ մտածեց, տակուզլուխ արավ, բայց չհաշտվեց էն մտքի հետ, որ էդքան ոսկին վերադարձնի վաճառական Փառնակին: Մտածեց, որ ուսուցիչ Մեսրոպը խաղ է խաղացել իր գլխին և որոշեց դիմել թագավորին, պատժել տալ Մեսրոպին:

Լույսը բացվելուն պես քահանան գանգատ գնաց թագավորին:

— Թագավորն ապրած կենա, էսպես ու էսպես,— լացակումած ասաց քահանան,— մի տարի առաջ զավակներիս ուղարկեցի Մեսրոպ ուսուցչի դպրոցը, որ սովորեն: Երեկ գնացի տուն բերելու, ահա զավակներիս փոխարեն ուսուցիչը արջի երկու քոթոթ դեմ արեց, ասելով, թե աստծու կամքով տղաներդ արջ են դարձել:

Թագավորը լավ էր ճանաչում Մեսրոպ Մաշտոցին, գիտեր, որ նա սուտ բան չի ասի: Բայց և այնպես մարդ ուղարկեց, կանչեց Մեսրոպին:

— Մեսրո՛պ ուսուցիչ, քահանան գանգատվում է քեզանից:

— Արքա՛, ումի՞ց է գանգատվում, իր մեղքերի համա՛ր է գանգատվում, թե՞ իր չար բախտից,— հարցրեց Մեսրոպը:

— Մեսրո՛պ ուսուցիչ, նրա տղաները ինչպե՞ս կարող էին արջի քոթոթ դառնալ:

— Արքա Տրդատն ինչպե՞ս խոզ դարձավ:

Թագավորն էլ ասելիք չուներ, ինքն էլ մի պահ շփոթվեց:

— Գուցե տղաներին առևանգել և տեղն արջի քոթոթնե՞ր են դրել:

— Թույլ տվեք քահանա Կիրակոսն էստեղ մնա, ես քոթոթներին բերեմ, տեսնենք իրենց հորը կճանաչե՞ն էսքանիս մեջ,— առաջարկեց Մեսրոպ Մաշտոցը:

— Դա շատ հետաքրքիր է,— համաձայնեց թագավորը,— գնա բե՛ր:

Մեսրոպ Մաշտոցը գնաց և քոթոթների աչքերը կապած ներս բերեց ու բացեց նրանց աչքերը: Քոթոթները նախ շփոթվեցին՝ դես-դեն նայեցին ու նկատեցին անկյունում նստած քահանային: Իսկույն վազեցին ու ցատկեցին ուսերին, սկսեցին լիզել դեմքը, ձեռքերը:

— Արքա՛,— ասաց Մեսրոպ Մաշտո-

ցը,— հիմա համոզվեցի՞ք, որ քոթոթները քահանայի տղաներն են:

— Ի՞նչ մեղք ես գործել, որ աստված քեզ պատժել է, տղաներիդ քոթոթ է դարձրել,— դիմեց թագավորը քահանային:

— Արքա՛... ես... ես...— ու լաց եղավ քահանան:

— Լա՛վ, քահանա՛, գնա տուն և հիշի՛ր, թե ինչ մեղք ես գործել, մեղքդ քավի՛ր, գուցե աստված գթա և վերադարձնի զավակներիդ,— ասաց արքան:

Մեսրոպն ու քահանան դուրս եկան, արջուկները՝ քահանայի ետևից:

— Հիմա ի՞նչ անենք, քահանա՛,— հարցրեց Մեսրոպը,— զավակներիդ տու՞ն ես տանում, թե՞ էլի ինձ հետ տանեմ վարժարան, մինչև դու մեղքդ քավես ու տեսնենք՝ աստված ի՞նչ կարգադրություն է անում:

— Չէ՛, ուսուցի՛չ, տա՛ր վարժարան, թող իրիցկինը նրանց չտեսնի: Ես էլ գնամ մտածեմ, թե ի՞նչ մեղք եմ գործել և ինչպե՞ս եմ քավում մեղքս...

Մեսրոպ Մաշտոցը նորից կապեց արջուկների աչքերը և տարավ:

Քահանան քայլերն ուղղեց դեպի Փառնակի տուն: Վաճառականն էլի նստել էր դռան մեծ քարին, ձեռքերը հենել ծնոտին և մտածում էր:

— Ողջու՛յն, օրհնված,— ասաց քահանան,— ի՞նչ ես մտքերի ծովն ընկել:

— Է՞լ չընկնեմ մտքերի ծովը, տե՛ր հայր,— պատասխանեց Փառնակը,— ինձնից էլ մեծ վշտի տեր մարդ կա՞ աշխարհում:

– Աստված ողորմած է, Փառնա՛կ, մի՛ տարվի մտքերով: Ահա մի տարի է գիշեր-ցերեկ աղոթում եմ, որ աստված ների քո մեղքերը: Տու՛ր ինձ կոտը՝ դնեմ ամբարի վրա, գուցե աստված քո ոսկիները նորից լցնի կոտը, վերադարձնեմ քեզ:

Փառնակը դուրս բերեց կոտը և տրվեց քահանային: Վերջինս կոտը դրեց թևի տակ ու գնաց: Տարավ տուն, ոսկին նորից լցրեց կոտը, դրեց ամբարի վրա և գնաց ուսուցիչ Մեսրոպ Մաշտոցի վարժարանը, գլուխը կախ կանգնեց Մեսրոպի առջև:

— Օրհնվա՛ծ,— ասաց,— գնանք միասին:

Մեսրոպը քահանայի հետ գնաց նրա տուն:

Քահանան ոսկով լի կոտն իջեցրեց ամբարի վրայից ու դրեց Մեսրոպի առաջ:

— Ես մեղավոր եմ, զղջում եմ արածս, ոսկին վերադարձնենք, և թող աստված ների իմ մեղքերը, վերադարձնի իմ զավակներին:

Մեսրոպ Մաշտոցի կարգադրությամբ վարժարանից բերին Կիրակոսի երկու տղաներին, որ մի տարով մեծացել և ավելի գեղեցկացել էին:

Կանչեցին նաև վաճառական Փառնակին:

— Վաճառակա՛ն Փառնակ, ահա՛ քո ոսկիները. էդքա՞ն էր, թե՞ պակաս է,— հարցրեց ուսուցիչը:

— Էսքան էր, ուսուցիչ Մեսրոպ,— պատասխանեց վաճառական Փառնակը:— Էս ոսկին ես նվիրում եմ դպրոցին: Թող շատանան դպրոցները, թող լուսավորվի մեր ազգը, թող շեն մնա մեր երկիրը...

Մեսրոպ Մաշտոցը շնորհակալություն հայտնեց Փառնակին ու էդ ոսկով դպրոցներ բացեց Հայաստանի բոլոր գավառներում, ուսուցիչներ պատրաստեց ու առաքեց դպրոցները, լուսավորեց մեր ժողովրդին: Սերունդները շարունակեցին նրա գործը և հուրհավիտյան հիշում ու փառաբանում են մեծն Մեսրոպ Մաշտոցին:

# ՄԱԾՈՒՆ



Լիքն է եթերը զնգուն
Բզզյուններով անարգել,
Կարասները՝ հնձանի
Ստվերներ են հավաքել:
Շունը հևում շնչահատ,
Շոգից հանում է լեզուն,—
Գետն է մտնում մի զոմէշ,
Քայլքը՝ ծանր-երազուն:
Հնձվոր տղերքը հանդում
Ահա նստում են հացի,
Եվ թասերի մեջ կավե
Շնչում է բույրը հանդի:
Շնչում է համը ծաղկի,
Շնչում՝ ճերմակ ցնծություն...
Բեղ-մորուքները ասես
Ուտում են թարմ սարի ձյուն:
— Գդալ-գդալ մածունը
Բաժանեցինք մեզ վրա,
Կճուճն՝ հոգսից դատարկվեց,
Մենք՝ ծարավից կեսօրվա:

ՎԱՀԳԵՆ
ԱՌԱՔԵԼՅԱՆ



# ԿԻԹ

Իրիկվա կապույտ մթնում
Մայրս ոչխար է կթում
Ու կանչում է ինձ՝ «Արի՛,
Արի՛, բալա՛ս, կա՛թ խմի»:
Կաթից առնում եմ ուրցի հոտ,
Մշուշահոտ, շաղահոտ,
Նրա մեջ կան մայիսներ,
Երեքնուկներ ու աստղեր:
Լուսինն ելնում է կանուխ,
Եվ ստվերներ թափում թուխ:
Բացեմ դռնակը գոմի,
Գառը մորը թող գտնի:
Գտնի... ինքն էլ մոր անուշ
Կաթից առնի կյանք և ուժ:

# ՀԵՆՐԻԿ ՄԱԼՅԱՆ

Ոմանց կարծիքով Թբիլիսիի № 81 դպրոցի շրջանավարտ Հենրիկը կարող էր իրավաբան դառնալ, իսկ հայրը համոզված էր, որ իր որդին առնվազն ակադեմիկոս կամ պրոֆեսոր է լինելու: Բայց նա դարձավ կինոռեժիսոր: Եվ այժմ արդեն ՀՍՍՀ ժողովրդական արտիստ է, պետական մրցանակների դափնեկիր:

Նա սիրում է իր մասնագիտությունը և այնպես է սիրում, որ իր նկարահանած ֆիլմերով իր աշխատանքը սիրել է տալիս թե մեզ, թե համամիութենական և թե արտասահմանյան կինոդիտողին:

Լենինգրադյան Համամիութենական փառատոնում «Եռանկյունի» ֆիլմն արժանացել է գլխավոր մրցանակներից մեկին: Իտալիայի Սան-Ռեմո քաղաքում «Մենք ենք, մեր սարերը» համարվել է հեղինակային լավագույն ֆիլմը: Երևանյան 11-րդ Համամիութենական կինոփառատոնում «Նահապետը» արժանացել է գլխավոր մրցանակի: Իսկ վերջերս Ռիգայի Համամիութենական կինոփառատոնում «Կտոր մը երկինք»-ը միանգամից 3 մրցանակի արժանացավ, որոնցից մեկը՝ «Լավագույն ռեժիսուրայի համար»-ը, Հենրիկ Մալյանինն էր:

Նրա ֆիլմերի բոլոր հերոսներն էլ զգայուն, անմիջական ու սիրելի մարդիկ են, ազգային համ ու հոտով շաղախված նուրբ կերպարներ: Այդպիսի կերպարները Մալյանի ֆիլմերում համոզմունք են և ոչ պատահականություն: Այս առիթով նա ասում է. «Այն անհատը, որն ըզգում է իր կողքի մարդուն, զրուցել է հայ գյուղացու հետ, շնչել է Մատենադարանի խորհրդավոր և «Հրազդան» մարզադաշտի բոլորովին էլ ոչ խորհրդավոր օդը, զայրույթով լռել է Եղեռնի զոհերի հուշարձանի առջև և հպարտացել Լենինի անվան հրապարակով, զգացել մեր ճարտարապետության վեհությունը և զմայլվել հայ աղջիկների «հեզաճկուն» պարով, ով հաղորդվել է Նարեկացուն, ում սիրտը բաբախել է Չարենցի սրտի և մեր այսօրվա միլիոնավոր սրտերի ռիթմով, չի կարող ազգային ֆիլմ չստեղծել: Ինձ թըվում է, բոլոր դեպքերում ֆիլմը ազգային է դառնում լոկ այն ժամանակ, երբ արվեստագետի շունչը, կյանքը սերտորեն կապված է ազգի շնչին ու կյանքին: Ազգային ֆիլմերը մարդու շնչառության նման մի բան են, նրա լեզվին նմանվող բան»:

Իսկ կինոհանդիսատեսի մասին Մալյանը գըրում է.

«Ես, իսկապես, երջանիկ կլինեի, երբ համոզվեի, որ իմ ֆիլմերը ոգևորել են, օգնել, ազնըվացրել, հղկել թեկուզև մեկ դիտողի»:



# ՆՈՐ ՀԱՆԴԻՊՈՒՄ «ԳԻՔՈՐԻ» ՀԵՏ

Հովհաննես Թումանյանի «Գիքորը» պատմվածքը առաջին անգամ էկրանավորվել է 1934 թվականին: Դա հայկական վերջին համր կինոնկարն էր: Ֆիլմը նկարահանել էր անվանի ռեժիսոր Ամասի Մարտիրոսյանը, նկարահանվել էին հայ բեմի մեծագույն վարպետներ Հրաչյա Ներսիսյանը, Ավետ Ավետիսյանը, Հասմիկը...

Եվ այսօր, 47 տարի անց, երբ կինոյի տեխնիկական հնարավորությունները շատ ավելի մեծ են, հայ կինեմատոգրաֆը նորից ձեռնամուխ եղավ «Գիքորին»:

Նոր ֆիլմի բեմադրող-ռեժիսորն է Սերգեյ Իսրայելյանը, իսկ գեղարվեստական ղեկավարն է՝ հանրահանաչ կինոռեժիսոր Հենրիկ Մալյանը, գյուղացի Համբոյի դերակատարն է Սոս Սարգսյանը, բազազ Արտեմինը՝ Արմեն Ջիգարխանյանը: Ֆիլմի հեղինակները աչքի են անցկացրել ութ հազար երեխա, մինչև որ, վերջապես, գտել են Դսեղում, Թումանյանի անվան դպրոցում գտել են Ալբերտ Ղուկինյանին:

Միամիտ ու ջինջ աչքերով տղա է Ալբերտը: Պատմում են, որ նկարահանումները մի անգամ երկու օրով հետաձգվել են... որովհետև բազազ Արտեմի դերակատար Արմեն Ջիգարխանյանի ձեռքը ոչ մի կերպ չէր գնում, որ «Գիքորին» ապտակի: Ի վերջո ինքը՝ Ալբերտն է համոզել նրան, թե խփի, ոչինչ, կդիմանամ: Անվանի դերասանը «մեղքը» քավելու համար Ալբերտին խոստացել է Մոսկվայից նրա



համար կաշվե գնդակ ու ֆուտբոլիստի կոշիկներ բերել:

— Կամ ֆուտբոլիստ տեմ դառնալ, կամ դերասան,— այն հարցին, թե ինչ է դառնալու, երբ մեծանա, լռեցու բարբառով պատասխանում է Ալբերտը: Ապա նրան նորից կանչում են նկարահանման հրապարակ:

Սկսվում է Գիքորի չարչարանքը: Նա ցախ է կրում, հետո ջրով լի ծանր դույլն է քարշ տալիս, դատարկում կաթսայի մեջ: Հենց որ փորձում է շունչը տեղը բերել, հնչում է Նատոյի չար ձայնը.

— Ի՞նչ ես հուրի-փերիի պես փռվել էստեղ...

Գիքորը խեղճ-խեղճ վեր է կենում ու կմկմում.

— Ես... ես...

Եթե ֆիլմում այս ամենը դուք կդիտեք մեկ անգամ, ապա նկարահանման հրապարակում այն շատ անգամ են փորձում և շատ անգամ էլ նկարահանում: Այնպես որ Ալբերտը չարչարվում է Թումանյանի Գիքորից ոչ պակաս, միայն այն տարբերությամբ, որ այստեղ նրա աշխատանքից գոհ են ու շնորհակալ: Ասենք, ինքը Ալբերտն էլ չի տրտնջում:

Կանցնի ևս մի քանի ամիս, և մենք էկրանների վրա կրկին կհանդիպենք բոլորիս այնքա՜ն ծանոթ ու սիրելի, այնքան հուզումներ պատճառած թումանյանական անմահ «Գիքորին»:

*ՍՏԵՓԱՆ ԶԱՔԱՐՅԱՆ*



*Լուսանկարը՝ ՓԱՀԼԱՎՈՒՆԻ ՆԱԶԱՐՅԱՆԻ*










# 3. Գանձը

*Հերցոգ Թորոսը Բալդուինին ցույց տըվեց իր անգուգական գանձերը՝ կարմիր ներկը, ոսկյա և արծաթյա անոթները...*

*ԱԼԲԵՐՏ ԱԽԵՆԱՑԻ «Երուսաղեմյան պատմություն», XII դար*

Արևելքում կարմիր գույնը համարվում է երջանկության, սիրո, խաղաղության խորհրդանիշ։ Հայկական կարմիրի շնորհիվ մեր գորգերը հիշեցրել են ծաղկափթիթ վարդի թփեր, իսկ մագաղաթները դարձել խոսուն, հնչեղ, հյութալի, շարժուն։ Խիստ ու մռայլ կրոնական գրքերը որդան կարմրի շնորհիվ պայծառացել են և նրանց էջերից նայել են հայկական հեզ, խռշորաչյա դեմքերը և թափանցելով մարդկանց հոգու խորքը՝ մխիթարել, հուսադրել, երբեմն էլ ցասումը մեղմել, մարել կամ էլ ընդհակառակը՝ բորբոքել։

1098 թվին, երբ հայոց կաթողիկոսներն էին Տեր-Վահրամը և Տեր-Վասիլը, իսկ հունաց վրա թագավորում էր Ալեքսեյը, Եվրոպայի խորքերից խմբված խաչակիրների ամբոխը, կրոնավորների գլխավորությամբ, շարժվում էր դեպի արևելք։ Սարից գլորվող ձյունահյուսքի նման նա քանի մոտենում էր արևելքին, այնքան ուռճանում էր, համալրվելով տարբեր և խայտաբղետ մոլեռանդ քրիստոնեական խմբերով։

Մոտեցող արհավիրքի մասին նամակով տեղեկացան Եդեսիայի իշխան Թորոսը և Տավրոսի տեր Ռուբենի որդի Կոստանդինը։ Շուտով հայտնի դարձավ, նաև, որ խաչակիր կոմս Բալդուինը հարյուր ասպետներով գըրավել է հյուսիսային Սիրիայում գըտնըվող Թել-բաշիր բերդաքաղաքը։ Իշխան Թորոսին այս լուրը մեծ հաճույք պատճառեց, չէ՞ որ գրավվել էր Եդե-

սիայից ոչ հեռու անհավատների ամ-րոցը, որոնց հետ ինքը գտնվում էր պայքարի մեջ, հետևապես Բալլուդինը Թորոսի ախոյանների թշնամին էր և վերջինս առանց հապաղելու դիմեց խաչակրին, օգնության կոչով, և հրա-վիրեց Եդեսիա: Բալլուդինը իսկույն արձագանքեց և եկավ: Նրա ժամանու-մը քաղաքի համար տոն էր, քրիստոն-յա բնակիչների համար նա աստծո ու-ղարկած հրեշտակ էր: Թորոսը կոմ-սին հրավիրեց իր բերդի աշտարակը և իշխանուհու ներկայությամբ ցուցա-դրեց այնտեղ կուտակած գան-ձերը՝ ադամանդները, ոսկյա և արծաթ-յա անոթներ և, որ գլխավորն է, այդ անոթներում զետեղված պուրպուրը՝ կարմիր ներկը, որի միակ տերը ին-քըն էր, հայ իշխան Թորոսը: Բալլու-դինը մինչ այդ Բյուզանդիայում արդեն տեսել էր ադամանդներ և ոսկի, ու գի-տեր դրանց գինը, իսկ պուրպուրը՝ այդ անզուգական ներկը, այն էլ այդ քա-նակով, առաջին անգամ էր տեսնում, չէ՞ որ դրանով էր ներկվում ամենա-փրկիչի փոխանորդ Հռոմի սուրբ պապի հագուստը:

Լայնաթիկունք, կապուտաչ, շիկա-հեր Բալլուդինը ծնվել և մեծացել էր Եվրոպայի խորքում, ուր բազմացել էին թալանի սիրահար ազնվականնե-րը, որոնք միմյանց խանգարում էին: Իհարկե, նա իր եղբայրների հետ ան-պատիժ թալանում ու կեղեքում էր սե-փական գյուղացիներին, բայց արդեն վերցնելու բան էլ չկար, կարիքը, ա-գահությունը, հարստանալու և արկած-ներ փնտրելու տենչը նրան պոկել էին իր հայրենիքի դանդաղահոս գետերից և ճահճուտ գետափերից ու անհաշիվ բախտախնդիրների հետ նետել արևելք:

Իշխան Թորոսը նայում էր Բալլուդի-նին իբրև վարձկանի և մտածում էր, որ այդ բարբարոսին լավ վճարելով կարելի կլինի կովեցնել ուզածին պես, ուզածի հետ, ա՛յ, թեկուզ արաբ է-միրի կամ էլ սելջուկների դեմ հանել, որոնք վերջերս սկսել էին ասպատակել Եդեսիայի շրջակայքը: Իշխանից չվրի-պեց նաև «ֆրանկի» աչքերի փայլը՝ գանձերը տեսնելու ժամանակ:

— Ասպետ, այս գանձերը չեմ խնա-յի, սրանք քոնը կլինեն, եթե դու կռ-վես քրիստոնյաների պիղծ և անհա-վատ ոսոխների դեմ:

— Իշխան, ես այստեղ եմ եկել ան-հավատների դեմ հանուն սուրբ կույ-սի պայքարելու և դա կանեմ հոգուս փրկության համար,— պատասխա-նեց Բալլուդինը:

Թորոսն զգաց, որ բարբարոսը իր կարծածի չափ միամիտ չէ, բայց չգիտեր, որ վերջինիս համար «անհա-վատ են» նաև բոլոր գանձ և իշխա-նություն ունեցողները, որոնց կարող է հաղթել:

— Ես ուզում եմ և՛ գանձերը, և՛ իշ-խանությունը, քանի որ մենք աստծո ծառաներս ու Քրիստոսի մարտիկներս արժանի ենք դրան և ունենք այդ իրա-վունքը:

Թորոսին ապշեցրեց ֆրանկի լկտիու-թյունը և ախորժակը: Նա պատրաստ էր բռնկվելու, բայց երբ հիշեց էմիրին և սելջուկ թալանչիներին, զսպեց իրեն: Խաչակիրները սրել էին առանց այն էլ անհաշտ պայքարը քրիստոնյաների և մուսուլմանների միջև: Եթե խաչակիր-ները հեռանային, հայերը մեն-մենակ կմնային վրիժառու և կրոնամոլ թշնա-մու դիմաց: Թորոսը քիչ մտածելուց հետո, տեղից ելավ և դեմքին տալով երջանիկ արտահայտություն, մերկաց-րեց կուրծքը և դիմելով Բալլուդինին ասաց.

— Արի՛, ասպե՛տ, քեզ սեղմեմ իմ մերկ կրծքիս, որպեսզի դու դառնաս

իմ հոգեորդին, իմ ժառանգը, այդպես է ընդունված մեզանում:

Ապշած Բալդուինը չդիմադրեց և այդպիսով նա դարձավ իշխանի «ժառանգը»:

Լուրը տարածվեց Եդեսիայում: Խաչակիրը մի քանի օրից հետո իր հոգևոր հոր կարգադրությամբ, վերցնելով ֆրանկներին և Եդեսիայի ողջ զորքը, մեկնեց կռվելու Թորոսի հակառակորդ ու թշնամի էմիրի դեմ: Թորոսը ուրախ էր, որ կարողացավ բարբարոսին խաբել և հասնել կրկնակի արդյունքի՝ քաղաքից հեռացնել քաղցած բորենուն և նրա ամուր ծնոտներով կրծել աղվես էմիրի կոկորդը:

Բալդուինի աչքերի առաջ շարունակ Թորոսի գանձերն էին, նա ուրախ էր, որ այդքան հեշտ ժառանգ դարձավ և համարյա տիրացավ անզուգական պուրպուրին և ադամանդներին:

Մինչև պատերազմի դաշտ հասնելը նա հանդիպեց իր ավագ եղբայր հերցոգ Գոտֆրիդին, որը խաչակիրների մեջ վայելում էր քաջի և հեռատեսի համբավ. եղբայրները տեսակցեցին վրանում, առանց վկաների: Գոտֆրիդը լսեց եղբորը ուշադիր, ապա սկսեց ծիծաղել: Դա ուրախության ծիծաղ չէր:

— «Փոքրի՛կս», դու զոհ կգնաս էմիրի թրին կամ էլ կմեռնես արևելքի անհաշիվ հիվանդություններից մեկնումեկից, թեկուզ շատ տարածված փորհարինքից և «ժառանգությունը» կմնա քո «հոգևոր հոր» աշտարակում:

Թորոս իշխանը թերագնահատել էր բարբարոսին և չգիտեր, որ նա՝ այդ մարմնեղ ասպետը գառնուկի պես կապված է իր ավագ եղբորը, որն էլ նրան ներշնչեց արևելքում գործելու նուրբ եղանակները: Թորոսի չորս դին սկսվեց հյուսվել բանսարկությունների նուրբ ոստայնը: Եդեսիացիք սոսկում էին սելջուկներից և վախենում էին մնալ առանց խաչակիր դաշնակիցների, այդ պատճառով էլ քաղաքի ընդերքում սաղմնավորվեց և սկսեց զարգանալ Թորոս իշխանի տապալման գաղափարը: Քառասուն երևելի եդեսիացիներ դիմեցին Գոտֆրիդին, որը քիչ չեմուչումից հետո, ցուցադրական «դժվարությամբ» համաձայնեց թույլ տալ եղբորը դառնալ Թորոսի փոխանորդը: Դեմ չէր նաև հայ իշխան Կոստանդինը:

Եդեսացիք մոռացել էին, որ միայն Թորոս իշխանի խելքի, փորձի և քաջության շնորհիվ էր Եդեսիան դադարել չար էմիրի հարկատուն և ծառան լինելուց:

Մեծ պասի հինգերորդ շաբաթը, խռովարարները անցնելով քաղաքի ամբոխի գլուխը, սկսեցին ոչնչացնել Թորոսի կողմնակիցներին: Նրանք ահեղ ճակատամարտ տվին նաև Թորոսի դեմ, որը ստիպված փակվեց բերդում: Երկուշաբթի, քառասուն նահատակների օրը, Թորոսը փորձեց թողնել բերդը, բայց մոտակայքում նկատելով գրգռված, նիզակավոր մարդկանց, նորից փակվեց բերդում: Հետո էլ սպասելով գիշերվա փրկարար մըթանը, փորձեց աննկատ իջնել բերդի հակառակ կողմից ու փախուստի դիմել: Բալդուինի զգոն կողմնակիցները կռահեցին Թորոսի մտադրությունը և թույլ տալով նրան մի քանի աստիճան ցած իջնել, շամփրեցին տասնյակ սրածայր նետերով: Թորոսը սլկվելով սանդուղքից, անշնչացած ցած գըլորվեց: Բալդուինի կողմնակիցները կտրեցին իշխանի գլուխը, հագցրին նիզակի ծայրին և ծաղրուծանակով երկար ժամանակ պտտեցին քաղաքի փողոցներում: Եդեսիայի իշխանը դարձավ խաչակիր Բալդուինը, որն էլ տիրացավ աշտարակի անգին պուրպուրով լի անոթներին: *(շարունակելի)*

# ՁՄԵՌԱՅԻՆ ՔՆԻ ԳԱՂՏՆԻՔԸ




Դոկտոր Նելսոնը Ամերիկայի Ռոչեստեր քաղաքի կլինիկայի սառեցվող մի զետեղարանում երկու արջ է տեղավորել: Արդեն ութ տարի է, ինչ գիտնականներն ուսումնասիրում են այդ արջերի ձմեռային քունը, վերահսկող ուսումնասիրությունների համար ռադիոակտիվ նյութեր են ներարկում, արյան և հյուսվածքների անալիզներ կատարում: Եվ այս բոլորն արվում է արջի օրգանիզմում նյութափոխանակությունը ղեկավարող անհայտ հորմոնը հայտնաբերելու նպատակով: Սակայն մինչև օրս դեռ չի հաջողվել պարզել, թե ինչպե՞ս է, որ կենդանիների օրգանիզմը արտաթորումների նյութերից չի թունավորվում:

Մնում է առեղծվածային նաև այն, որ գարնանը արջերը նիհարած են արթնանում, սակայն այդ նիհարումը կապված է միայն պահեստային ճարպային շերտի ծախսման հետ, բայց ոչ մկանային հյուսվածքի կորստի: Եվ արթնանալուց հետո արջը ամենևին էլ իսկույն վրա չի ընկնում ուտելիքին, կարծես բնազդորեն «բեռնաթափող մի ռեժիմ» պահելով անցողիկ շրջանում: Ըստ որում գազանների մկանային ուժը, որքան էլ որ դա զարմանալի է, այդքան երկար անգործությունից հետո ամենևին չի պակասում:

Եթե գիտնականներին հաջողվի գտնել արջերի ձմեռնաքունը ղեկավարող հորմոնը, ապա այն հաջողությամբ կօգտագործվի մարդկանց որոշ հիվանդություններ բուժելիս, իսկ նրանք, ովքեր ավելորդ քաշից են տառապում, հնարավորություն կստանան այսպես ասած՝ առանց անկողնուց դուրս գալու, ազատվելու դրանից:

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

## ՀԱՏԻԿՆԵՐԻ ԿԱՐՈՏԸ

Սահում է ցերեկն ամպամած,
Նստել է ձյունը մայր հողին,
Սերմերի համար մեր ցանած
Դարձել է փափուկ անկողին:
Սերմերը ննջում են մուշ-մուշ,
Եվ ձյունն էլ օրոր է ասում,
Բայց նրանք երազում անուշ
Ծղրիդի համերգն են լսում:
— Լսո՞ւմ եք իմ ձայնը, մարդի՛կ,
Գաղտնիք կա այս ամեն ինչում...
Լռությամբ ամեն մի հատիկ
Հողի մեջ կարոտ է շնչում...

## ԻՐԻԿՆԱԺԱՄ

Ոչ ծղրիդն է երգում,
Ոչ արտույտը արտի,
Սվսվում է բակում
Մի մերկացած բարդի:
Փաթիլների ծափով
Նորա գալիս է ձյուն,
Մշուշվում է ամպով
Լեռնապարը հեռվում:
Լռությունը նազով
Փաթաթվել է ձորին,
Աղբյուրի տակ մեր գով
Մտորում է լորին:
Ձյուն է գալիս բարի,
Ու ձյան վրա շողուն
Քարայծյամը վայրի
Ոտնահետքն է թողնում:

Օրանգուտան՝ մալայերեն նշանակում է անտառի մարդ: Եվ իրոք, այդ խոշոր կապիկը շատ է նման մարդու: Գորիլաների և շիմպանզեների հետ միասին օրանգուտանները պատկանում են մարդանման կապիկների ընտանիքին: Օրանգուտանների հայրենիքը Հարավարևելյան Ասիայի երկու կղզիների՝ Սումատրայի և Կալիմանտի արևադարձային անտառներն են: Առաջ այդ կապիկները տարածված էին կղզիների ամբողջ տերիտորիայում, բայց տարեցտարի, անխնա որսի հետևանքով, նրանց քանակը սաստիկ կրճատվել է: Վերջին տվյալներով նրանց թիվը չի անցնում հինգ հազարից: Այժմ մարդանման կապիկը մտցված է «Կարմիր գրքի» մեջ:

Կենսաբան Ա. Սոզինովի այս հոդվածը Մոսկվայի կենդանաբանական այգու երկու օրանգուտանների՝ Բոնոյի ու Սումայի մասին է:

Երիտասարդ օրանգուտանները կենսուրախ, չարաճճի արարածներ են: Սիրում են խաղալ, թռչկոտել, քաշքշել իրար: Այս տեսակետից Բոնոն և Սուման բացառություն չեն: Իրենց մյուս հասակակիցներից տարբերվում են թերևս միայն նրանով, որ չնայած երկուսն էլ ընդամենը հինգ տարեկան են, բայց արդեն շատ են ճանապարհորդել:

Բոնոն բնիկ տեխասցի է: Ծնվել է ամերիկյան Բրաունվիլ քաղաքի կենդանաբանական այգում: Մի տարի ապրել է այնտեղ, ապա տեղափոխվել գերմանական կենդանաբանական այգիներից մեկը, այնտեղից էլ ժամանել Մոսկվա:

Մոսկվայում Բոնոյին արդեն սպասում էր Սուման: Վերջինս Մոսկվա է եկել Սումատրայի արևադարձային անտառներից:

Բոնոյի մորթը կապտավուն է: Նարնջագույն ցանցառ մորուք ունի, թիկունքին և ուսերին՝ մուգ շիկավուն երկար բուրդ, ոտքերը կարճ են, փորը մեծ, իսկ ձեռքերը երկար ու կեռ: Սուման նրանից ավելի խոշոր է, մորթն է՛լ ավելի բաց գույն ունի:

Կապիկներն ամբողջ օրը խաղում են կամ էլ մարմնամարզությամբ զբաղվում: Լուսավոր ու ընդարձակ վանդակում բազմաթիվ պտտաձողեր ու սանդուղքներ կան: Բայց կապիկների ամենասիրելի մարմնամարզական սարքը հին ավտոմոբիլի դողն է, որ շղթաներով կախված է առաստաղից: Սուման այդ ճոճանակից օգտվում է խիստ յուրահատուկ ձևով: Ձեռքերով բռնում է դողը, քաշում պատի տակ և ոտքերով հրում պատը: Թռիչքի ժամանակ ոտքերով կառչում է դողից, ձեռքերը բաց թողնում և ճոճվում այդպես գլխիվայր կախված:

Հաճախ Սուման և Բոնոն միասին են խաղում: Գլուխկոնծի են տալիս, թավալվում հատակին, հետապնդում իրար: Բոլոր չարաճճիությունների հեղինակը Սուման է: Օրինակ, իր նախաճաշը նա երբեք մինչև վերջ չի ուտում: Խնձորի ու գազարի մնացորդները թաքցնում է ու սպասում, որ Բոնոն վերջացնի իր նախաճաշը: Իսկ Բոնոն մինչև վերջ մաքրազարդելով իր նախաճաշը, քաշվում է մի անկյուն ու նստում փիլիսոփայի տեսքով: Հարմար տեղավորված՝ մտախոհ նայում է այցելուներին, որոնք երբեմն, ավաղ, իրենց պահում են ոչ



այնքան խելացի՝ թըխկ-թըխկացնում են ապակուն, ծամածռություններ անում կապիկներին, առանց պատճառի հռհռում՝ չգիտես կապիկների՞, թե՞ իրենք իրենց վրա: Եվ մինչ Բոնոն ապարդյուն ջանում է լուծել իր ուժերից վեր այդ հանելուկը՝ հասկանալ մարդկանց տարօրինակ վարքագիծը, ինչ-որ բան է ընկնում նրա գլխին: Խնձորի մնացորդներ ու կրծոտված գազարի կտորներ են մեկը մյուսի ետևից թռչում շշմած Բոնոյի գլխին: Այդ Սուման է իրացնում իր նախանձաշի մնացորդները: Եվ հենց որ «արկերը» վերջանում են, Սուման թաքնըվում է իր տնակում:

Բոնոն իմաստուն ու խոհեմ արարած է: Հավաքում է իր վրա նետված գազարի ու խնձորի կտորտանքները և ըսկըսում չփչփացնելով անուշ անել: Իսկ Սուման տեղ ու դադար չունի: Ցատկում է դող-ճոճանակի վրա, հրում պատը և փորձում թռիչքի ժամանակ գետին գլորել ընկերոջը: Եվ Բոնոյին ոչինչ չի մնում անելու, քան ընդունել մարտահրավերը: Մրրիկի նման նետվում է դեպի ընկերուհին և մի րոպե անց արդեն անհնար է որևէ բան զանազանել: Հատակին մի շիկավուն կծիկ է գլորվում: Մերթ փայլատակում է Բոնոյի կապտավուն մռութը՝ զարմանքից լայն բացված աչքերով, մերթ Սուման է ճանկում սեփական ոտքը, համոզված, որ Բոնոյի ոտքն է բռնել: Փնչում են, ֆսֆսացնում, ճչում: Վերջապես հաղթողը որոշված է, և նրանք բաժանվում են իրարից՝ յուրաքանչյուրն ինքն իրենից գոհ:

Քաշկռտուկին փոխարինում է հանգիստը: Այստեղ էլ Սուման մի անսովոր բան է հնարում: Ոտքերով կառչում է պտտաձողից, ձեռքերը ցած թողած կախվում գլխիվայր, փակում աչքերը և սկսում համաչափ ճոճվել պատի ժամացույցի ճոճանակի նըման: Բոնոյին միանգամայն բավարարում է և փայտե տախտակամածի վրա քնելը:

Փոքրիկ օրանգուտանների օրը խիստ հագեցած է: Նախաճաշում են, քընում, խաղում, բժշկական քննության ենթարկվում, կենդանաբանական այգու այցելուներին դիտում և, վերջապես, մաքրում սեփական «բնակարանը»: Իհարկե, իսկական մաքրողները կենդանաբանական այգու աշխատակիցներն են, բայց Բոնոն, որ խիստ տնարար է, երբեմն օգնում է նրանց: Այդ անելիս նա ընդօրինակում է այգու աշխատակիցների գործողությունները, իհարկե, իր կողմից անհրաժեշտ ուղղումներ մտցնելով: Մի անգամ տեսնելով, որ ծառայողը լվանում է հատակը իր վանդակի առաջ, Բոնոն վայրկենապես շուռ է տալիս իր թասի ջուրը: Ճիշտ է, փալաս նա չուներ, բայց մի՞թե նեխուրի ահագին փունջը դրան չէր փոխարինի: Եվ Բոնոն ըսկըսում է հատակի լճակը ջանասիրաբար տարածել վանդակով մեկ, ընդօրինակելով ծառայողի շարժումները, հաճախ աչքի տակով նայելով նրան:

Ընդօրինակելու ընդունակությունն ու տարրական մտածողությունը բնորոշ են բոլոր մարդանման կապիկներին: Որոշ հետազոտողներ պնդում են, որ օրանգուտանները կարող են առանց դըժվարության սովորել սեղանի առաջ նստել, օգտըվել պատառաքաղից, կաթ լցնել բաժակն ու խմել: Ամերիկացի գիտնական Հորնադեյի տըվյալներով, որը հատուկ ուսումնասիրել է կապիկների վարքը, օրանգուտանին կարելի է սովորեցնել հեծանիվ քշել, մուրճով մեխ խփել, բանալիով բացել ու փակել փականքները:

Հորնադեյի փորձերի ժամանակ մի օրանգուտան բանալիների մեծ կապուկի միջից անհրաժեշտ բանալին գտնում էր նույնքան հեշտ, որքան մարդը: Սա խոսում է այն մասին, որ օրանգուտանները ունեն լավ հիշողություն և օրինակելի աշակերտներ են:

## ԵԹԵ ՁԱԽԼԻԿ ԵՔ...

Եթե հակված եք ավելի շատ ձախ ձեռքով գործելու, ապա մեծ վարպետ դառնալու հնարավորություն ունեք սպորտի այնպիսի տեսակներում, ինչպիսիք են թենիսն ու սուսերամարտը: Այս է ֆրանսիական բժիշկների այն խմբի կարծիքը, որը դոկտոր Գ. Ազեմարի գլխավորությամբ մի ամբողջ շարք հատուկ ուսումնասիրություններ է կատարել: Նրանք եկել են այն եզրակացության, որ ձախլիկների ռեակցիան ավելի լավ է, քան «աջ կողմնորոշում ունեցողներինը»: Գիտնականների կարծիքով ուղեղի՝ կենտրոնական ներվային համակարգի ուղիներով հըղած ազդանշանները մարմնի ձախ մասին ավելի շուտ են հասնում, և ձախլիկ սպորտսմենները հնարավորություն ունեն վայրկյանի մի քանի հազարերորդ մասով ավելի շուտ ընդունել այն և պատասխանել, քան աջլիկները: Ի դեպ, ֆրանսիական հետազոտողները նշում են, որ Մոսկվայի օլիմպիական խաղերի սուսերամարտի չորս չեմպիոններից երեքը ձախլիկներ էին:



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 12 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ, 15 տ., Երևան



Հանձնված է արտադրության 14.10.81 թ.։ Ստորագրված է տպագրության 14.1.1982 թ.։ ՎՖ 06012։ Թուղթ օֆսեթ, 70×100¹/₁₆։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61160։ Պատ. 2271։ Գինը՝ 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.






Այս պատկերը այնպես մասերի բաժանեք, որ ստացվի 11 տառ: Յուրաքանչյուր տառի բարձրությունը 5 քառակուսի է: Գտնված տառերով կարելի է կազմել երկու թռչունի անուն:

Առաջարկը՝ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ

## Պ Ա Տ Ա Ս Խ Ա Ն Ն Ե Ր

«Պիոներ» № 10
«Կոմերիտմիությունը տարեթվերում»

| ԴԵՊԻ ԱՋ | ԴԵՊԻ ՁԱԽ |
|---|---|
| 1937 | 1918 |
| 1945 | 1935 |
| 1970 | 1943 |
| 1963 | 1971 |
| 1940 | 1967 |
| 1932 | 1944 |
| 1924 | 1930 |
| 1919 | 1923 |

«Պիոներ» № 11 «ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԻԿ»

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ

7. Կիբալչիչ 8. Բեթհովեն 10. Գաբեն 11. Վերդի 12. Իսահակյան 15. Նյուտոն 18. Նանսեն 19. Ռաֆայել 20. Սենկևիչ 21. Ստեյնից 24. Կոչուբեյ 26. Լոնդոն 27. Սարյան 31. Օստրովսկի 33. Ամպեր 34. Արագո 35. Կոնենկով 36. Շահինյան։

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ

1. Սիրանույշ 2. Հաշեկ 3. Պիկասո 4. Ռենուար 5. Շոպեն 6. Մենդելեև 9. Աղամյան 13. Լոմոնոսով 14. Մանանդյան 16. Նախիմով 17. Ռենտգեն 22. Ռուբցովա 23. Կոլումբոս 25. Փափազյան 28. Իսակով 29. Սկոտտ 30. Վերբեր 32. Ֆրանս։

